

# ՀԱՂԹԱՆԱԿԻ ՄԱՅԻՍ

*ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ*

Դրսում՝ մայիս,
Դրսում՝ գարուն,
Ո՞վ է հրաշքն այս արարում...

Արևը՝ տաք,
Օդը՝ մաքուր,
Ծպտացող քար,
Ծիծաղող ջուր,
Լեռները ի վար՝
Հոսող կանաչ,
Խենթ գետերի
Վայրի շառաչ։

Երկնքի մեջ՝
Հավքի երգեր,
Փողոցներում՝ ծաղկուն ձեռքեր,
Ծաղկուն դեմքեր,
Աչքեր բարի՝
Սիրով փարված հող ու քարին։
Օրերն այնքան
Ջերմ են ու մեղմ,
Որ թվում է, թե աշխարհում
Պատերազմ ու մահ չի եղել։

Բայց եղե՛լ են դաժան օրեր,
Բայց եղե՛լ են վշտի ծովեր,
Եվ եղել են կամք ու ավյուն,
Հաճուն կյանքի հոսող արյուն,
Եվ մեր պայծառ երկնքի տակ
Եղել է մի մեծ Հաղթանակ,
Հաղթանակի մի մեծ գարուն,
Որը գալիք գարունների
Մեծ խորհուրդն էր իր մեջ պահում...

Դրսում՝ մայիս,
Դրսում՝ գարուն,
Ո՞վ է հրաշքն այս արարում...

*Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*



# ԻՄ ՊԱՏԱՆԻ ԲԱՐԵԿԱՄՆԵՐԻՆ՝ ՄԵԾ ՀԱՂԹԱՆԱԿԻ ՕՐՎԱ ԱՌԹԻՎ

ՀԱՄԱԶԱՍՊ ԲԱԲԱՋԱՆՅԱՆ
Սովետական Միության զրահատանկային զորքերի մարշալ
Սովետական Միության Հերոս

Երեսուն տարի է մեզ բաժանում 1945 թվի մայիսի 9-ի անմոռաց օրվանից, երբ հանդիսավոր հրավառության հրետանային համազարկերը Մոսկվայում, սովետական հանրապետությունների մայրաքաղաքներում և հերոս քաղաքներում, ամբողջ աշխարհին ազդարարեցին ֆաշիստական Գերմանիայի դեմ Սովետական Միության տարած փայլուն հաղթանակի մասին: Ինչքան է անցյալի մեջ հեռանում են Հայրենական մեծ պատերազմի իրադարձությունները, փոխվում են սերունդները, այնքան ավելի ամբողջական ու վառ է ներկայանում մեզ հաղթանակի վեհությունը՝ սովետական ողջ ժողովրդի անմոռաց սխրագործությունը:

Մեր ժողովուրդը, մեր զինվորները Հայրենական մեծ պատերազմում ցուցաբերեցին մարդկության պատմության մեջ անօրինակ արիություն, հերոսություն ու խիզախություն, և պաշտպանեցին մարդկության մեծագույն նվաճումը՝ ազատության իրավունքը, ոչ միայն մեր երկրի, այլև շատ ուրիշ երկրների անկախությունը:

Մենք՝ սովետական մարդիկ, երբեք չենք մոռանա 1941 թվի հունիսի 22-ի սարսափելի օրը, երբ այդ գեղեցիկ կիրակի օրվա արշալույսին բազմամիլիոն գերմանա-ֆաշիստական բանակը կրակ և մահ տեղաց մեր քաղաքների ու գյուղերի վրա: Ուխտադրուժ հարձակման անսպասելիությունը մեզ համար ծանր կացություն ստեղծեց: Սակայն այդ անասելի բարդ պայմաններում մեր փառավոր զինված ուժերը, մեր ժողովուրդը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ պաշտպանեցին մեր ազատությունը և լիովին ջախջախեցին ֆաշիստական գազանին իր իսկ որջում:

Չխամրող փառքով է պսակված սովետական երիտասարդության մարտական և աշխատանքային սխրագործությունները Հայրենական մեծ պատերազմի դաժան տարիներին: Մեր երիտասարդությունը միշտ գտնվում է առաջավոր շարքերում, ամենուր, որտեղ պետք է լինում բոցավառ սիրտ, քննախույզ միտք, եռանդ ու նախաձեռնություն:

Շատ տարիներ են անցել այդ ժամանակներից: Մեր երկիրը վերականգնել է պատերազմի բոլոր ավերածությունները, ուժ հավաքել և սրընթաց գնում է Վ. Ի. Լենինի նշած ուղիով, կյանքի բոլոր մարզերում ամեն օր նոր հաջողությունների հասնելով:

Մեծ երջանկություն է վիճակվել ձեզ, իմ պատանի՛ բարեկամներ, ապրել մեր երկրի այսպիսի ժամանակներում՝ տիեզերքի նվաճման, արդյունաբերական հզոր կառույցների շինարարության ու մարդուն անհրաժեշտ ամեն ինչի առատության պայմաններում: Դուք սովորում եք դպրոցում, պատրաստվում դառնալ ոչ միայն մասնագետներ ու կոմունիստական հասարակարգի ակտիվ շինարարներ, այլև ձեր մեծ հայրենիքի քաջարի պաշտպաններ: Այդ պատճառով



էլ դուք դեռ պետք է զինվորական գործ սովորեք, երբ գնաք ծառայելու բանակում և նավատորմում: Բայց մինչ այդ պետք է նախապատրաստվեք ծառայության: Մեր անընդգրկելի երկրում հազարավոր տղաներ և աղջիկներ սովորում են ԴՕՍԱԱՖ-ի դպրոցներում և ուսումնական հաստատություններում, հանձնում են մարզատեխնիկական համալիրների նորմաներ: Շատերը ծառայությունից հետո իրենց կյանքը կապում են բանակին, դառնում են պրոֆեսիոնալ զինվորական-սպաներ: Այդպիսի պատվավոր մասնագիտություն ընտրելով, նրանք չեն սխալվում: Դրանում ես համոզված եմ բազմաթիվ օրինակներով և առաջին հերթին՝ անձնական փորձով:

Հետադարձ հայացք նետելով կյանքիս անցած ուղուն, ինձ տեսնում եմ Հայրենական մեծ պատերազմից շատ առաջ, երբ բարձր-լեռնային հայկական Չարդախլու գյուղի մի սովորական տղա էի: Այն ժամանակ հասակակիցներիս հետ «կռիվ» խաղալիս, ես չէի կարող երազել, որ կդառնամ զորահրամանատար: Սակայն տեղի ունեցավ Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունը, տղաների ու աղջիկների համար բացվեցին բոլոր ուղիները դեպի գիտելիքներ, արվեստ, աշխատանքային գործունեություն և զինվորական ծառայություն: Տասնյոթամյա պատանի էի, երբ ընդունվեցի զինվորական դպրոց: Չնայած այն ժամանակվա դժվարություններին, ռուսաց լեզվի վատ իմացությանը, ես համառորեն սովորում էի և զինվորական դպրոցն ավարտեցի գերազանց: Իմ հետագա ծառայությունը կապված է տանկային զորքերի հետ: Նրանց հետ հրե ճանապարհներով շատ կիլոմետրեր անցա Հայրենական մեծ պատերազմում՝ Մոսկվայից մինչև Բեռլին: Տանկային զորքերի հետ է կապված իմ ետպատերազմյան ծառայությունը:

Տանկիստ, սովետական տանկիստ: Դա բարձր է հնչում: Այդ անունը ունի իր փառքն ու իր պատմությունը: Մեր զրահատանկային ուժերի օրրանի մոտ կանգնած էր Վ. Ի. Լենինը: Նա էր, որ առաջին զրահապատ ջոկատների մեջ տեսավ այն, ինչը հետո դարձավ տանկային զորք, որը կազմեց մեր բանակի հետևակ զորքերի գլխավոր հարվածային ուժը:

Ծառայությունը փառավոր տանկային զորքերում, ինչպես նաև զորքերի մյուս տեսակներում, պահանջում է առաջին հերթին խորը գիտելիքներ, արիություն և նպատակակետին հասնելու կամք: Ես համոզված եմ, իմ պատանի՛ բարեկամներ, որ ձեզնից շատերը կգնան սովորելու մեր բարձրագույն տանկային, հրետանային, ավիացիոն, ծովային և այլ ռազմական ուսումնարաններում: Այդ առիթով ուզում եմ մի քանի ցանկություններ հայտնել:

Գիտա-տեխնիկական բուռն առաջադիմությունը, որ տեղի է ունենում մեր երկրում, արմատական փոփոխություններ առաջացրեց սպառազինության և ռազմական տեխնիկայի զարգացման մեջ: Բանակում և նավատորմում այժմ մենք ոչ միայն հանդիպում, այլև ամենուրեք ներդնում ենք ռադիոէլեկտրոնիկա, ավտոմատիկա, ռեակտիվ տեխնիկա, ատոմային շարժիչներ և այլն:

Այդ բոլորը նոր պահանջներ են առաջադրում երիտասարդությանը, պիոներներին ու դպրոցականներին, նրանց, ովքեր պատրաստվում են զինված ուժերի շարքերը մտնելու:

Ամեն օր պետք է խորացնեք ձեր գիտելիքները, բարձրացնեք գաղափարական, տեխնիկական և կուլտուրական մակարդակը, աշխատանքային և ֆիզիկական կոփվածություն ունենաք: Այդ պատճառով էլ ցանկանում եմ, որ գերազանց ու առաջավոր լինեք ուսման, կարգապահության և աշխատանքի մեջ այժմվանից:

Ամենաուժեղ զենքը գիտելիքն է: Նրա վրա են հիմնվում բարձր բարոյական կայունությունը, համարձակությունը, անձնազոհության պատրաստակամությունը, հաղթանակի հասնելու ճանապարհին եղած ամեն դժվարություն հաղթահարելու ընդունակությունը: Թող յուրաքանչյուրիդ համար պիոներական և դպրոցական տարիները դառնան գաղափարական կոփվածության, սովետական երկրի զինվորին ու քաղաքացուն հատուկ բոլոր դրական գծերի դաստիարակության լավ դպրոց:

Մեծ հաղթանակի երեսունամյակի առթիվ, հանդիսավոր նշելով տոնը, մենք խոնարհում ենք մեր մարտական դրոշները Հայրենական մեծ պատերազմի հերոսների հիշատակի առջև, որոնք զոհվեցին գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մարտերի ժամանակ, իրենց կյանքը տվին մեր երկրի ազատության և անկախության, ձեր երջանիկ մանկության և ապագայի համար, այն բանի համար, որ մենք ապրենք ամենագեղեցիկ երկրում: Մենք փառաբանում ենք պատերազմի և աշխատանքի վետերաններին, ռազմաճակատի և թիկունքի հերոսներին, պահեստում գտնվող և պաշտոնաթող բոլոր մարտիկներին, որոնք արիաբար ու հմտորեն պաշտպանեցին մեր սուրբ հայրենիքը:

Արժանի՛ եղեք ձեր պապերի, հայրերի և ավագ եղբայրների փառքին:

Շնորհավորելով ձեզ, իմ թանկագի՛ն հայրենակիցներ, մեծ հաղթանակի տոնի առթիվ ցանկանում եմ մեծ հաջողություններ ուսման մեջ, ձեր բոլոր աշխատանքներում, ողջ գործունեության մեջ՝ հանուն մեծ նպատակի իրագործման՝ դառնալ մեր հայրենիքի արժանավոր քաղաքացիներ ու պաշտպաններ:

Պիոնե՛ր, Սովետական Միության կոմունիստական կուսակցության գործի պայքարին եղի՛ր պատրաստ:

# ԶԻՆՎՈՐԸ ՏՈՒՆ ԷՐ ԳԱԼԻՍ ՄԱՐՏԵՐԻՑ

(Բալլադ)

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Զինվորը տուն էր գալիս մարտերից,
Պահած հոգու մեջ
Անմոռաց հուշեր՝
Հայրենի արտի, օջախի ու տան,
Ե՛վ ջինջ առավոտ,
Ե՛վ լուսնյակ գիշեր,
Ե՛վ հավքեր՝ գարնան ծառերին նստած:

Բլրալանջերին՝
Գառների հոտեր,
Աղբյուրներ՝ կապույտ ժայռերից հոսող,
Մարգագետիններ,
Չհնձած խոտեր,
Ու բիլ ծաղիկներ՝ սրտի հետ խոսող:

Փոքրիկ աղջիկներ՝
Ջրի գնացող,
Ուսերին փոքրիկ սափորներ դրած,
Բարի տատիկներ՝
Վշտից ծերացող,
Պապիկներ՝ այգու թմբերին նստած:

Տեսնում էր շուրջը
Ճամփաներ փոշոտ,
Ծուռ եկած փողեր՝ լռած զենքերի,
Եվ տառապանքի
Աչքերը խոշոր՝
Պատուհաններից փլված շենքերի:

Փախած անիվներ
Ջարդված սայլերի,
Եվ տափաստաններ՝ խոպան մնացած,
Եվ նա նոր ուժ էր
Տալիս քայլերին,
Որ հայրենի տուն հասներ ժամ առաջ:

Զինվորը տուն էր
Գալիս մարտերից,
Որ պատերազմի վերքերը բուժի,
Պահած հոգու մեջ
Ե՛վ խինդ, և՛ թախիծ,
Ե՛վ լույս պատկերներ ծիածող հուշի:

Բերում էր գոհված
Իր ընկերների
Կարճ նամակները մարտերում գրված,
Կարոտի հուրը
Նրանց սրտերի,
Եվ հաղթանակի կանչերը նրանց:



Նա տուն էր գալիս
Ճամփով հաղթության,
Ճակատին՝ փայլող աստղը իր փառքի,
Որպես զինվորը
Մեծ խաղաղության,
Մեր Սովետական հաղթած բանակի...

Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ

# ԿԱԽԱՐԴԸ

ՅՈՒՐԻ ԿԱԶԱՅԵՎ



Ես համարյա պատանի էի, երբ եկա Տեսովո: Ճամպրուկիս մեջ Գայդարի հատորյակն էր, սպիտակեղեն և նոր ստացած ուսուցչի դիպլոմը: Գյուղը գտնվում էր երկու վրանաձև բլրակների բաժանման մասում: Գարնանը բլրակներից գալիս, գյուղի միակ փողոցով հոսում էին հարյուրավոր առուներ: Կուրացուցիչ փայլփլելով արևի տակ, առուները հոսում էին այգեպատ հին տների մոտով՝ դեպի անտառային Մստա գետը: Ամենահին ու ամենամեծ տունը գտնվում էր փողոցի վերջում: Ասում էին, իբր, տունը կառուցել են գյուղի առաջին բնակիչները, առանց սղոցի օգնության, միայն կացնով: Այդ տանը տեղավորված էր դպրոցը, ուր ես ուսմասվար էի և բոլոր առարկաների ուսուցիչ: Գյուղի երեխաները կարծես ընտրովի լինեին. բաց շիկահեր, բաց կապույտ աչքերով հյուսիսցիներ էին: Ահա ինչու նրանց մեջ անսովոր կերպով առանձնանում էր թուխ, գանգրամազ, կարծես ներկված սև հոնքերով տղան: Նա դպրոց եկավ դասերն սկսելուց մի շաբաթ անց: Բացեց դասարանի դուռը, լուռ մոտեցավ վերջին նստարանին և նստեց ծայրին, Սենյա Շիտիկովի կողքին: Սենյան վախվխելով մի կողմ քաշվեց:

— Ի՞նչ է անունդ,— հարցրի ես:

— Պյոտր:



— Մի՞թե քեզ բարևել չեն սովորեցրել, Պե՛տյա:

Նա չպատասխանեց: «Այ քեզ թռչուն»,— մտածեցի ես և շարունակեցի դասը: Նույն օրը երեկոյան ինձ մոտ, տուն եկավ Սենյա Շիտիկովը և ասաց.

— Գրիգո՛րի Ֆոմիչ, ես Ուրուսովի կողքին չեմ նստի:

— Ինչո՞ւ:

— Վախենում եմ:

Սենյան գլխարկով սրբեց քրտնած դեմքը և նայեց դռանը:

— Այդ Պետկան ծերուկ Ուրուսովի թոռն է:

— Հետո ի՞նչ:

— Չէ՞ որ ծերուկը կախարդ է: Ողջ գյուղը նրանից զգուշանում է:

Ես փորձեցի համոզել Սենյային, բայց նա իրենն էր պնդում.

— Չեմ նստի և վե՛րջ:

Դրանից հետո Պետյա Ուրուսովը մենակ էր նստում: Դասերի ժամանակ սովորաբար նա փայտից ինչ-որ տիկնիկներ և սուլիչներ էր պատրաստում: Շատ անգամ փորձում էի նրան հանկարծակիի բերել, բայց Պետյան հարցերին միշտ պատասխանում էր կարճ ու խելացի: Նա հիանալի հիշողություն ուներ: Անցավ մի շաբաթ, սակայն իմ աշակերտները առաջվա պես հեռու էին քաշվում նրանից: Պետյան էլ, ինչպես ինձ թվում էր, չէր ձգտում նրանց հետ մտերմանալ: Բայց մի անգամ ես տեսա, որ այդպես չէ:

Երեխաները դպրոցի բակում գորոդկի էին խաղում: Պետյա Ուրուսովը կանգնել էր հեռվում և ագահորեն հետևում էր ամեն մի հարվածին: Վերջապես նա համարձակվեց ու մոտեցավ խաղացողներին.

— Թույլ կտա՞ք ես էլ փորձեմ:

Վալկա Ֆատյանովը՝ ամենաավագը աշակերտներից, ծուլորեն հրեց նրա ուսը և ասաց.

— Գնա՛, գնա՛, մեզ կախարդի ճտեր պետք չեն:

Նրա շուրջը կանգնած խաղացողները քրքջացին:

— Վա՛լկա, խփի՛ր նրա վզակոթին:

— Տե՛ս, ո՜նց է աչքերը փայլեցնում: Կարծես գայլ լինի:

Վալկան ձեռքը բարձրացրեց և... նույն ակնթարթին գետին գլորվեց: Պետյան երեխաներին նայելով՝ դանդաղ* փողոց գնաց: Ես հասա նրան և բռնեցի արմունկից: Նա ձեռքն ազատեց ու ետ շրջվեց: Նկատեցի, որ աչքերում արցունքներ կան:

— Ինչո՞ւ նրանք ինձ չեն սիրում,— կամացուկ հարցրեց նա:

Հաջորդ օրը Պետյան դպրոց չեկավ: Չեկավ և երեք օր անց: Դասերից հետո ես կանչեցի Սենյա Շիտիկովին ու հարցրի.

— Գիտե՞ս, թե որտեղ են ապրում Ուրուսովները:

— Գիտեմ: Գրեմյաչի Կլյուչի մոտ:

— Այդ դեպքում ուղեկցի՛ր ինձ:

Մենք երկար քայլեցինք ճահճի վրայով ձգվող նեղ ճեղանուղով: Ճահճում խիտ աճել էին սպիտակաբեղ ու պրտու բույսերը, հաճախ հանդիպում էին հապալասներ, իսկ հեռվում մերկ թփերի վրա փայլում էին թրթնջուկի սուտակագույն ողկույզները: Հետո ճեղանուղին վերջացավ և մենք դուրս եկանք մի չոր տեղ: Արահետի ճյուղավորման վայրում Սենյան վճռականորեն կանգ առավ.

— Սպանեք էլ՝ այսուհետև ոչ մի քայլ չեմ անի:

— Լա՛վ. դու վերադարձի՛ր

# ԵՎ ՆՐԱ ԹՈՌԸ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

տուն,— ասացի,— ես մենակ տեղ կհասնեմ:

— Այստեղից արդեն մոտ է,— ուրախացած ասաց Սենյան:— Միշտ ա՛ջ գնացեք, միայն ա՛ջ: Իսկ ինձ մայրիկս սպասում է:

Ես ուսիս հրացանն ուղղեցի և քայլեցի արահետով: Այն ինձ հասցրեց մի մեծ խոտավետ բացատ, որի ծայրին կանգնել էր կողքի թեքված մի խրճիթ: Ինձ դիմավորեց դեղնագույն մի խոշոր շուն: Նա խելացի աչքերով ուշադիր ինձ նայեց և թողեց, որ իր մոտով անցնեմ: Այդ շանը ես էլի էի տեսել. նա Պետյային դպրոց էր ուղեկցում և անմիջապես հեռանում: Տանը միայն Պետյան էր:

— Ա՛հ, դո՞ւք եք, Գրիգորի՛ Ֆոմիչ,—ասաց նա այնպես, կարծես ինձ էր սպասում:

— Բարև՛: Ես կարծում էի, թե դու հիվանդ ես:

— Չէ՛, պապս է սկսել հազալ:

— Իսկ ո՞ւր է նա:

— Գնացել է զանգակածաղկի արմատներ հավաքելու: Դրանք, այդ արմատները, քառասուն հիվանդություն են բուժում: Ա՛յ, եթե, աստված չանի, հիվանդանաք, երկու օրում ես ձեզ կառողջացնեմ: Ես այստեղ ամեն մի խոտ ճանաչում եմ: Երբ մեծանամ, բժիշկ եմ դառնալու:—Պետյան լռեց և անսպասելի հարցրեց.

— Ուզո՞ւմ եք Ուլկային ցույց տամ:

Խրճիթից հեռու, հաստաբուն սոճու մոտ վանդակ էր դրված, իսկ նրա մեջ՝ անիվ: Այդ անիվի միջով վազում էր Ուլկան՝ փոքրիկ, շեկ սկյուռիկը:

Քիչ անց հայտնվեց ոչ բարձրահասակ, գզգզված մազերով, Պետյայի նման գնչուական աչքերով պապը:

— Բարի ողջո՛ւյն,— ասաց ծերուկը և մեկնեց կոշտուկաշատ ձեռքը:— Դուք եկել եք Պետյային տեսնելո՞ւ: Ոչի՛նչ, փոքրիկը կամաց-կամաց մեծանում է: Իսկ դու, Պետյա՛, ինչո՞ւ ես հյուրին փողոցում սպասեցնել տալիս: Գնանք խրճիթ:

Խրճիթում մենք հաղարջի ճյուղերով եփած թեյ խմեցինք: Ես վերջապես համարձակություն առա և ուղղակի հարցրի.

— Պա՛պ, ինչո՞ւ գյուղում ձեզ չեն սիրում:

Ծերուկ Ուրուսովը մտածեց, ապա ծիծաղեց.

— Դե ինչի՞ պետք է ինձ սիրեն: Ախր ես նրանց չեմ թողնում անտառում չարություններ անել:

Տեսնելով, որ չեմ հասկանում, նա բացատրեց.

— Մեր կողմերը պետությունը արգելանոց է հայտարարել: Իսկ նրանք, գյուղացիները, դարձյալ անտառ են գալիս կացնով, կուղբեր են նորից ոչնչացնում: Կուղբը անպաշտպան կենդանի է, մարդկանց վստահող, և նրան փայտով էլ կարելի է սպանել, բայց ես չեմ թողնում:

Ծերուկը խորամանկորեն նայեց ինձ ու շարունակեց.

— Ես նրանց, թանկագի՛ն, վախեցնում եմ: Ով կացնով գալիս է, իսկույն հայտնվում եմ կողքին:

Նա ձեռքի ափերը միացրեց և հանկարծ այնպես բնական կռռնչաց բուի պես, որ մարմնովս սարսուռ անցավ:

— Պատահում է, որ կուղբերին էլ եմ զգուշացնում, որ պաշտպանվեն: Նաև որսացանցերն եմ խճճում: Ահա և ինձ կախարդ են անվանում: Ոչի՛նչ, չեմ նեղանում: Մարդկանց անգիտությունից նեղանալը մեղք է: Իրենք հետո շնորհակալություն կասեն: Մարդը մի օրվա համար չպետք է ապրի:

Տանտիրոջը ես հրաժեշտ տվեցի երեկոյան դեմ: Պետյան եկավ ինձ ուղեկցելու: Անտառից այն կողմ մայր էր մտնում հոգնած արևը, և նրա կարմիր շողերը բեկ-բեկ սողում էին սոճիների արանքով: Ամենուր թփերի վրա ցողի կաթիլների պես կայծկլտում էին սարդոստայնները: Երբ ցանկացա նրանցից մեկը պոկել, Պետյան չթողեց:

— Պետք չէ՛, Գրիգորի՛ Ֆոմիչ: Դրանք օգտակար են: Գիտե՞ք, թե ամառվա ընթացքում սարդը ինչքան ճանճ ու մոծակ է ոչնչացնում: Հաշիվ չկա: Ձկնորսների պես էլ աշխատասեր են: Իսկ որ տգեղ են, ինչ կա որ. հո պարտադիր չէ՞, որ բոլորն էլ գեղեցիկ լինեն...

Մենք քայլում էինք մայրամուտի արևով ողողված անտառով, երբ հասանք մի լճակի: Մեր շուրջը աշնանային մեղմ խշշոցով թափվում էին տերևները, և լճի գորշ ջուրը լցված էր կարմիր ու դեղին տերևներով: Կարծես մի գունագեղ նավատորմ այստեղ գտել էր իր վերջին նավահանգիստը: Լճի ջրերում լողում էին նաև գլուխները վեր տնկած շատ շերեփաձկներ:

— Ո՞վ է այսպես արել,— հարցրի Պետյային:

— Շելեսպերն է որս կատարել, այդպիսի ձուկ կա: Պոչով խփել է ջրին և խլացրել նրանց: — Պետյան բռունցքով սպառ-



նաց.— Դե սպասի՛ր, սատանի՛ ճուտ, քեզ ցո՛ւյց կտամ։

Ճանապարհին Պետյայի հետ խոսեցինք շատ կենդանիների մասին. նա ինձ հարցնում էր Աֆրիկայի, բրածո էպիորնիս թռչունի մասին և ուզում էր իմանալ, թե ճի՞շտ է, որ նրանց ձվի մեջ կարելի է լցնել մի քանի դույլ ջուր։

— Երևի այդ թռչունը հիմա ինչ-որ տեղ ճահճում թաքնվում է,— ենթադրեց Պետյան։— Լավ կլիներ այդտեղ գնալ ու գտնել նրան, չէ՞։

Ես զարմանում էի, թե ինչքան հետաքրքրասեր ու հարցասեր է Պետյան և որքան կարողանում էի՝ պատասխանում էի նրա հարցերին։ Մենք բաժանվեցինք համարյա գյուղի մոտ։

— Դե՛, ապագա՛ բժիշկ, ցտեսություն,— ասացի ես։— Երբ մեծանաս, Աֆրիկան քեզ կսպասի։

— Ի՞նչ կա որ,— ծիծաղեց Պետյան։— Կարող է և գնամ...



Պետյա Ուրուսովը բժիշկ չդարձավ և նրան բախտ չվիճակվեց Աֆրիկան տեսնել։ Սկսվեց պատերազմը և իմ աշակերտները ցրվեցին ողջ երկրով մեկ։

Շատ տարիներ անց, ես Սենյայի՝ մայոր Սեմյոն Իգնատևիչ Շիտիկովի հետ այցի եկա հետախույզ պարտիզան Պետյա Ուրուսովի գերեզմանին։ Քիչ հեռու թաղված էր պապը։ Ծերուկին ֆաշիստները գնդակահարել էին, քանի որ նա չէր ցանկացել պատժիչներին ուղեկցող ծառայել։ Նորից աշուն էր։ Կարմիր տերևները մեղմ խշշոցով թափվում էին պապի և թոռան վրա, իսկ շուրջը աղմկում էր անտառ-արգելանոցը։

Թարգմ. ԳՐ. ՄԱԿՈՒՆՑԻ



# Է Լ Խ Ո

ԶՈՐԻ ԲԱԼԱՅԱՆ

Նկ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՍԱՄՎԵԼՅԱՆԻ

Գիշերը Էլխոն չկարողացավ քնել։ Ձեռքերը սաստիկ ցավում էին։ Մատները ուռել էին ու չէին ենթարկվում։ Եվ ոչ միայն ցավում էին, այլև ծիծաղելի էին, այդ ինչպե՞ս չէին ենթարկվում իրենց տիրոջը։ Էլխոն հիշեց, որ նախրապանները հաճախ իրենց սառած ձեռքերը շփում են ձյունով, և հետևեց նրանց օրինակին։ Բայց ցավը դրանից չպակասեց։ Հետո ձեռքերը պահեց խարույկի մոտ։ Դեմքը, հատկապես քիթն ու այտերը, հաճելի ջերմություն էին զգում, մինչդեռ մատներն այնպես ուժգին էին ցավում, ասես ինչ-որ մեկը սեղմում էր դրանք քարերի մեջ առած։

Գիշերը խաղաղ էր։ Արտասովոր խաղաղ։ Հավանեա էր պատահում, որ չումի պատերը չփռփռան քամուց։ Իսկ հիմա լսվում էր, թե սիրտն ինչպես է տրոփում կրծքի տակ։ Կոշտ ձյան վրա կատարած եղջերուների ամեն մի քայլը արձագանքում էր չումում։ Ձմռան խաղաղ աստղալից գիշերները, ինչպես նաև պայծառ արևը՝ անամպ երկնքում, միշտ ճքճքան սառնամանիքներ են թաքցնում իրենց ետևում։ Էլխոն վախենում էր սառնամանիքից։ Նա չգիտեր, որ այդ ժամանակ որքան սաստիկ լինի սառնամանիքը, այնքան ավելի լավ՝ եղջերուների համար։ Ցեմենտացած ձյունը ատիճանաբար փշրվում է ու դառնում ավազ, և եղջերուները հեշտությամբ են կճղակներով փորում՝ եղջերվամամուռ ճարելու համար։ Բայց դա հետո, դա անմիջապես չի լինում։ Առայժմ եղջերուները պետք է մնան հեռու սարերում։ Եվ Էլխոն պետք է համբերությամբ սպասի պապիկի վերադարձին։ Եվ ոչ միայն սպասի։ Նա պարտավոր է փրկել նաև այն երկու եղջերուներին, որոնց եղջյուրները սղոցել է պապիկը։

Հաջորդ առավոտյան Էլխոն դուրս եկավ մութ չումից և վախեցավ, նայելով իր ձեռքերին։ Ճերմակ-ճերմակել էին, ինչպես նոր եկած ձյունը։ Դժվարությամբ հագավ ձեռնոցները, առանց որոնց արդեն մի րոպե անգամ հնարավոր չէր մնալ դրսում, ու կրկին գործի անցավ։ Հասկանում էր, որ այլ կերպ հնարավոր չէ։ Նա, ինչպես նախորդ օրը, սրտի ցավով տեսավ, թե եղջերուները ինչպես են հուսահատ վայվվում երեկվա փոսերի մոտ, և ամեն անգամ համոզվելով, որ այս մեկի

Սկիզբը՝ № 4-ում։

մեջ այլևս մամուռ չկա, վազում են մեկ ուրիշ փոսում կեր որոնում: Էլխոն բավական հեռացավ չումից, և շիկամազ Լայկան, շղթայվածի պես, ամենուրեք հետևվում էր նրան: Նա հեռացավ, որովհետև մոտակայքը արդեն ամբողջապես փորփրված էր:

Օր-օրի ավելի հեշտությամբ էր կոտրվում սառույցը: Էլխոն գլխի էր ընկնում, որ թեև սառնամանիքը անձրևից հետո ամբողջ տունդրան սառցե վրահով էր պատել, ինչպես պապիկն էր ասում, այդ նույն սառնամանիքն էլ հենց փրկում էր տունդրան: Եվ նա հրճվում էր, որ ինքն անձամբ համոզվում էր այդ ճշմարտության մեջ: Ինքը՝ առանց պապիկի օգ ւթյան:

Միայն չորրորդ օրը վերադարձան նախրապանները, մի քանի օրով, դեռևս նախիրը թողնելով սարերում: Նրանք սկզբում կարծեցին, թե մոլորվել են, թե դա իրենց չումը չէ, որի շուրջը առաջ հարթ տունդրան էր փռված, իսկ այժմ ամբողջապես ծածկված էր փոսերով: Բայց երբ փոքրիկ Էլխոն ընդառաջ վազեց նրանց, կասկածները վերացան: Ծերուկը կրծքին սեղմեց թոռնիկին ու հանկարծ պարմացավ, տեսնելով, թե տղայի այտերով ինչպես են հոսում արցունքները, որոնք անմիջապես սառցե ուլունքներ էին դառնում: Նա իր բարի աչքերը կկոցած, նայում էր թոռնիկին ու չէր հասկանում, տխո՞ւր է Էլխոն, թե՞ ուրախ:

— Ի՞նչ է պատահել, Էլխո՛: Մի՞թե չգիտես, որ տունդրայում տղամարդիկ երբեք չեն լալիս: Նույնիսկ, երբ մեռնում է ամենամոտիկ մարդը, միևնույն է, չեն լալիս: Այդպես է օրենքը: Տունդրայում միայն նորածինները իրավունք ունեն լաց լինելու, այդ էլ այն պատճառով, որ նրանք դեռևս չեն կարողանում խոսել:

— Ների՛ր ինձ, պապի՛կ,— ասաց Էլխոն հագալով:— Էլ չեմ անի: Ուղղակի շատ եմ կարոտել քեզ,— և նա ամուր փաթաթվեց պապիկին:

Միայն այդ ժամանակ ծերունին նկատեց թոռնիկի ճերմակ մատները: Նա Էլխոյի փոքրիկ ձեռքերն շտապ իր ափերի մեջ առավ և սկսեց շփել: Ծերուկը նույնիսկ չհարցրեց, թե ինչու են տղայի մատները փայտացել, այդպես ճերմակել և ուռել: Հիմա դա չէր կարևորը: Նա մի բան գիտեր. եթե այսօր չփրկես, վաղը ուշ կլինի: Մատները կսևանան ու կսկսեն մահանալ: Առաջ, նման դեպքերում, շամանը պարենյան[1] դանակով վիրահատում էր ձեռքերը կամ ոտքերը, վերքը կարում եղջերվի ջլերով և տաք մոխիր ցանում վրան: Բայց դրանից հաճախ էր պատահում, որ մարդիկ մեռնում էին: Իսկ հիմա, փառք աստծո, բժիշկներ կան: Ծերունին շարունակում էր բամուց ու սառնամանիքից սևացած ու ճաքճքած իր ափերով շփել թոռնիկի փոքրիկ ձեռքերը և տեսնելով ինչպես է նա դեմքը կնճռոտում ցավից, կրկնում էր.

— Համբերի՛ր, բալե՛ս: Հասկանում եմ, ցավում է:

[1] Փարեն գյուղում պատրաստված դանակ:

# ՀԱՑԸ

ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

Դուք հացին վերից մի՛ նայեք,
Դուք հացը գլխից վե՛ր պահեցեք,
Սեղանին ինչ էլ որ լինի՝
Հացի դեմ խոնա՛րհ մնացեք:

Մեր նախնիք հացը պաշտել են,
Սրբերի կարգին են դասել,
«Սուրբ» բառով հացին պատվել են
Ու հացին «արդար» են ասել:

Թե գետնին փշրանք է եղել՝
Կռացել, վերցրել են գետնից,
Որ հացի սիրտը չնեղվեր,
Որ հացը չկարեր անից:

Թե հացը ձրի էլ լինի՝
Դուք հացի վրա դողացե՛ք,
Ամեն մի հատիկ ցորենի
Քրտինքի՛ գինը իմացեք:

Հացն է ձեզ հացի տեր անում,
Սուրբ հացից ճամփան մի՛ շեղեք,
Մեր «արդար» բառը հիշեցեք
Ու հացին արժանի՛ եղեք...

Շատ է ցավում: Բայց դիմացիր: Չէ՞ որ դու տղամարդ ես, Էլխո՛:

— Ների՛ր ինձ, պապի՛կ: Ես չպետք է լաց լինեի: Ես չէի ուզում: Ուղղակի շատ էի կարոտել քեզ:

— Հասկանում եմ, Էլխո՛: Ես էլ քեզ եմ կարոտել: Դիմացի՛ր:

Ամեն անգամ, երբ արևելքում ծագում է արևը, նույնիսկ ամենախաղաղ եղանակին, գետնին կպած սողում է խիուսը՝ գետնահողմը: Արևը հորիզոնից ոստյուններով է վեր նետում, թպրտալով, ինչպես ցանցի մեջ ընկած ձուկը: Եվ որքան վեր է բարձրանում նարնջագույն գունդը, այնքան նարնջագույն է դառնում շուրջն ամեն ինչ, այնքան սառնամանիքային: Եվ այնքան ուժգին է փչում խիուսը, իր հետ տանելով արևի առաջին ճառագայթների տակ կայծկլտացող ձյունափոշին:

Ծերունին դուրս եկավ չումից ու անմիջապես իջեցրեց գլուխը, դեմքը թաքցնելով խիուսի ծակծկող ձյունափոշուց: Քիչ ջանքեր չպահանջվեցին եղջերուներին բռնելու և լծելու համար: Նրանք քացի էին տալիս, աշխատում դուրս պրծնել եղջերափոկերի ամուր կապանքներից: Կյանքում առաջին անգամ զրկվում էին ազատությունից և ոչ մի կերպ չէին ուզում համակերպվել տունդրայի մեծ ազատությունը կորցնելու հետ: Մի քանի անգամ ցանկացան միանգամից պոկվել տեղից, բայց կոշտ ու ամուր կաշեգոտիների պատճառած սուր, կտրատող ցավը չափավորում էր նրանց ոգևորությունը: Հանկարծ նրանք մեկեն խաղաղվեցին: Նախրապանները դուրս էին եկել, արգիշայի մեջ տեղավորում էին փոքրիկ Էլխոյին, որի ձեռքերը փաթաթված էին շատկերիկի մորթով: Ծերուկը ապշեց, տեսնելով, թե ինչպես հանկարծ խաղաղվեցին եղջերուները, որոնք անվերջ ետ էին նայում, փաղաքուշ հայացքներ նետում տղային: Նրանք այնպես առույգորեն սկսեցին քաշել սահնակը, ասես ամբողջ կյանքում սովոր էին եղել լծվելու: Աշխույժ սլանում էին դարուփոս տունդրայով և աղմուկով արտաշնչում տաք օդը: Միայն պառիթափ լեռնանցքներում էր ծերուկը իջնում արգիշայից, որպեսզի «կանգնած խոյից»[2] բռնած՝ օգներ եղջերուներին: Իսկ վայրէջքներում և հարթ տարածություններում հարկ չէր լինում, որ ծերուկը քշեր: Նրանք ասես գիտակցում էին, որ հիմա տղայի կյանքը իրենցից է կախված: Սովորաբար շատ ջանքեր են պահանջվում, մինչև որ եղջերուները ընտելանում են լծվելուն: Բայց ընտելանալու դեպքում էլ մինչև վերջ նրանք չեն հաշտվում ազատությունից զրկվելու հետ: Մինչդեռ հիմա այդպես առույգ վազում են:

Կեսօրին մոտ սահնակը մտավ շրջկենտրոն ու կանգ առավ հիվանդանոցի փայտե դռների մոտ: Ծերուկն ուզեց գրկել տղային, բայց Էլխոն ընդդիմացավ:

— Չէ՞ որ ոտքերս չեն ցավում, պապի՛կ:

— Ես այդ մասին չմտածեցի, Էլխո՛: Կարծում եմ հիվանդը՝ հիվանդ է:

— Ես հիվանդ չեմ, միայն ձեռքերս են ցավում:

Էլխոյին քննող երիտասարդ բժիշկը նույնպես ասաց, որ տղան միանգամայն առողջ է, իսկ ձեռքերը հնարավոր չէ բուժել այստեղ: Էլխոյին պետք է ուղարկել քաղաք: Ինքնաթիռով: Քաղաք տանող ուրիշ ճանապարհ չկա: Միայն օդով: Այդպես ասաց շրջանային երիտասարդ բժիշկը: Եվ հենց այդ նույն օրն էլ Էլխոյին ուղարկեցին քաղաք: Որքան էլ պապը խնդրեց, որ իրեն թողնեն թոռնիկի հետ գնալ, թույլ չտվեցին: Չի կարելի: Բժիշկն ասաց, թե քաղաքի հիվանդանոցում տղային պակաս չեն խնամի, քան պապի չումում:

Բժիշկները երկար մտածում էին, թե ինչպես բուժել տղայի ցրտահար ձեռքերը: Մաշկը նուրբ ձեռնոցի պես պոկվեց երկու թաթերի վրայից: Ե՛վ ցավալի էր, և՛ սոսկալի նայել նրա մատներին, որ բոլորովին նման չէին մատների: Հաստացել էին, ծածկվել վարդագույն ու դեղին բծերով և ամբողջ ժամանակ թացանում էին, պատվում փուչիկներով: Հետո խորհրդակցելու հրավիրեցին ցրտահարության գծով ամենագլխավոր մասնագետին՝ բժիշկ Ռոստոմյանին, որին Կամչատկայում շատերը Պուշկին էին կոչում, որովհետև նույն անուն-հայրանունն ուներ, ինչ-որ մեծ բանաստեղծը՝ Ալեքսանդր Սերգեևիչը: Բժիշկ Ռոստոմյանն ասաց, որ վիճակը շատ ծանր է, բայց, այնուամենայնիվ, ամեն ջանք կգործադրեն Էլխոյի ձեռքերը փրկելու համար:

Հիվանդանոցում շուտով բոլորը լավ ճանաչեցին կորյակ փոքրիկ տղային, որ ման էր գալիս ձեռքերին ասես բռնցքամարտիկի ճերմակ ձեռնոցներ հագած: Նա ցանկալի հյուր էր բոլոր պալատներում: Մարդիկ գալիս էին ու գնում, իսկ նա մնում էր: Երկու անգամ մաշկի պատվաստում կատարեցին նրա ձեռքերի վրա: Վիրահատությունը շատ ցավոտ էր, և Ալեքսանդր Սերգեևիչը տղային նախապես զգուշացնում էր այդ մասին: Նա ասում էր, որ եթե Էլխոն լավ տանի վիրահատությունը, եթե ուշադրություն չդարձնի ցավին, ապա ձեռքերը շուտով կլավանան:

Եղավ այնպես, ինչպես ասել էր բժիշկը: Երկու ամիս հետո, հերթական վիրահատման ժամանակ Էլխոն ինքն էլ տեսավ, որ ձեռքերի վրա նոր մաշկ է գոյանում: Նա ուրախանում էր և՛ իր, և՛ պապիկի փոխարեն, որն այնպես հուզվեց, երբ իմացավ, որ թոռնիկին պետք է տեղափոխեն քաղաք: Էլխոն հաճախ էր պապիկին երազում տեսնում: Հիվանդանոցի պատուհանից նայում էր փողոցով անցուդարձ անող ավտոմեքենաներին ու զարմանում, որ ոչ մի տեղ եղջերու չի երևում: «Մի՞թե հնարավոր է ապրել առանց եղջերուների»:

Վաղուց արդեն անցել էր ձմեռը, ամառ էր (Կամչատկայում կրկին, ձմռանն անմիջապես հաջորդում է ամառը, որին (առանց աշնան) կրկին փոխարինում է ձմեռը, իսկ Էլխոն դեռևս հիվանդանոցում էր: Իհարկե, վիրակապելու համար պարտադիր չէր պալատում պառկած մնալ: Բայց Էլխոն քաղաքում ոչ ոք չուներ, դրա համար էլ նրան պահում էին հիվանդանոցում: Երբ նրան հայտնեցին, որ մի շաբաթ հետո, բոլորովին կհանեն վիրակապերը, անչափ ուրախացավ: Մտածում էր, որ շուտով կվերադառնա տունդրա, պապիկի մոտ: Գոնե մի քիչ մնա պապիկի հետ: Չէ՞ որ սեպտեմբերի մեկից Էլխոն դպրոց էր գնալու, իսկ դա նշանակում էր, որ պապիկին տեսնելու էր միայն արձակուրդներին:

Սակայն բժիշկ Ռոստոմյանը հիասթափեցրեց Էլխոյին: Նա ասաց, որ առայժմ չի կարելի տուն գնալ: Նրա մատները ամբողջովին փայտացած են: Բոլորովին չեն ծալվում: Հարկավոր է բուժել: Եվ երկար բուժել: Ահա այդ ժամանակ էլ Ալեքսանդր Սերգեևիչը որոշեց

2 Սահնակի երկու կողերն իրար միացնող աղեղնաձև ամրակապ:



Էլխոյին տանել իր տուն: Նրանք ամեն օր միասին էին գալիս հիվանդանոց: Բժիշկը հագնում էր ճերմակ խալաթն ու սկսում բուժել հիվանդներին, իսկ Էլխոն գնում էր բժշկական ֆիզկուլտուրայի կաբինետը, որտեղ հատուկ վարժություններ էին անում, ստիպում շարժել մատները, մերսում, տաքացնում էլեկտրականությամբ: Նույն բանը անում էին տանը: Եվ դեռ կիրակի օրերն էլ Ալեքսանդր Սերգեևիչի բնակարանը վեր էր ածվում բժշկական ֆիզկուլտուրայի կաբինետի:

Երբ երկար ու տանջալից փորձերից հետո Էլխոն միայն մատներով սեղանի վրայից բարձրացրեց ռետինե գնդակը, Ալեքսանդր Սերգեևիչն այնպես գոռաց, որ տղան վախեցավ: Հետո երկուսն էլ ուրախ ու բարձր բրբջացին: Բժիշկը տղային վեր բարձրացրեց, բրբըջալով սեղմեց կրծքին և երկուսով ընկան մահճակալի վրա, շարունակելով ծիծաղել: Դա նրանց ամենաերջանիկ օրն էր: Վերջապես, մի փոքր հանգստացան և հետո նրանք այնպես բարձր էին խոսում, ասես սենյակում ինչ-որ մեկը աղմկում էր և խանգարում նրանց միմյանց լսելու:

Ալեքսանդր Սերգեևիչն ու փոքրիկ Էլխոն այդպիսի ուրախ պահեր շատ ունեցան: Նրանց հիշողության մեջ ամուր տպավորվեց էլի մի դեպք, նույնքան ուրախալի ու աղմկոտ: Հինգ մատների ծայրերը Էլխոն միացրեց իրար և այդպես պահեց մի ամբողջ րոպե: Այդպես արեց նախ մի, ապա մյուս ձեռքի մատները: Իհարկե, մատներն առաջվանը չէին, դժվարությամբ էին ենթարկվում: Մինչև վերջ չէին ծալվում, բռունցք չէին կազմում: Բայց, այնուամենայնիվ, դրանք մատներ էին, նրա՝ Էլխոյի մատները: Նա կարող էր դրանցով աշխատել: Ալեքսանդր Սերգեևիչը նրան սովորեցրեց մատիտ բռնել, դա էլ էր վարժություն համարվում: Սովորեցրեց նաև տառեր գրել: Եվ տղան նույնիսկ ինքնուրույն ըսկըսեց գրել իր անունը՝ «Էլխո»: Ճիշտ է, տառերը ծուռումուռ էին ստացվում, բայց չէ՞ որ Էլխոն դեռ դպրոց չէր գնում:

Օգոստոսի կեսերին քաղաքում եկավ առաջին ձյունը, մինչդեռ թերակղզու հյուսիսում, տունդրայում, մարդիկ վաղուց դահուկներով էին շրջում: Բժիշկ Ռուստոմյանը որոշեց տղային անձամբ տանել տուն, և շտապեց, որպեսզի Էլխոն մինչև դասերն սկսվելը հնարավորություն ունենար մի քիչ պապիկի հետ մնալ: Անցյալ անգամ, երբ տղան գալիս էր քաղաք, ոչինչ չէր տեսել ինքնաթիռի լուսանցույցից, որովհետև մութն էր: Բայց հիմա պատուհանի մոտ նստած՝ Էլխոն տեսնում էր, թե կապո՜ւյտ-կապույտ երկինքը ինչպես է ինչ-որ հեռուհեռվում միանում ճերմա՜կ-ճերմակ երկրին: Նա կյանքում առաջին անգամ այդպիսի բարձրությունից նայեց տունդրային, որը նրան ավելի անսահման ու ավելի հարթ երևաց, քան երբ նայում ես նրան գետնին կանգնած: Հանկարծ Էլխոն անհանգստացավ, նա արմունկով հրեց իր կողքին նստած Ալեքսանդր Սերգեևիչին և բարձր, առանց ոգևորությունը թաքցնելու, ասաց.

— Եղջերունե՛րը... այդ մեր եղջերուներն են: Ահա՜, նայեցե՛ք:

Ալեքսանդր Սերգեևիչը քիչ բարձրացավ տեղից և տղայի գլխի վրայով նայեց լուսանցույցից:

— Ո՜ւհ, տեսնո՞ւմ ես որքան շատ են...

— Դրանք իմ պապիկի եղջերուներն են: Նա բրիգադիր է:

— Շուտով կտեսնես նրան:

— Իսկ պապիկս չի երևում,— ասաց Էլխոն, գլուխըն առանց շրջելու, ու չգիտես հարցնո՞ւմ էր, թե՞ հաստատում:

— Հիմա պապիկդ այնտեղ չէ: Նա վաղուց մեզ սպասում է օդանավակայանում:

Ինքնաթիռը վայրէջք կատարեց ճերմակ, հարթ դաշտում: Դեռ երկար ժամանակ անձայն առաջ էր շարժվում իներցիայով: Ապա ուժգին ռնոցով շրջադարձ կատարեց, պոչը շան պես շարժելով, դանդաղ մոտեցավ փայտե տնակին, որի տանիքի վրա աշտարակ կար: Էլխոն դուրս եկավ ինքնաթիռից ու անմիջապես ձեռքով ծածկեց դեմքը. այնպիսի՜ առատ լույս էր ինքնաթիռի մութ սալոնից հետո: Աստիճաններից ցած իջավ, մի քանի քայլ արեց ու քարացավ: Ուղիղ իր դիմաց, տասնըհինգ-քսան մետրի վրա կանգնած էր պապիկը՝ արգիլայի մոտ: Եղջերուները երկուսն էին՝ մեկը սև, մեջքին ճերմակ խալեր, մյուսը ընդհակառակը, ճերմակ՝ մեջքին սև խալեր: Էլխոն նկատեց, որ պապիկի ձեռքին շատկերիկի մորթի կա:

— Պապի՜կ,— գոչեց տղան ու նետվեց դեպի ծերունին: Բայց երկու քայլ չարած կանգ առավ: Եղջերուները ընդառաջ վազեցին նրան: Ծերունին շարունակում էր մնալ տեղում, շատ էր հուզվում, և դա երևում էր նրանից, որ չնայած սառնամանիքին, շուտ-շուտ ըշփում էր քրտնած ճակատը, որ հազիվ էր երևում թավամազ մալախայի տակից: Եղջերուները միանգամից կանգ առան ուղիղ տղայի առաջ: Երբ Էլխոն հայտնըվեց արդեն նրանց միջև, ասես պայմանավորված՝ միասին բարձրացրին գլուխները: Վախենում էին, թե հանկարծ իրենց ճյուղավոր սուր եղջյուրներով կվիրավորեն փոքրիկ մարդուն: Երևի չգիտեին, որ վաղուց սղոցել են իրենց եղջյուրները: Թույլ տվին, որ տղան շոյի իրենց: Եվ Էլխոն իր կիսաբաց մատներով շոյեց մեկի ճերմակ, մյուսի սև վիզը:

Բժիշկ Ռուստոմյանը կանգնել էր քիչ հեռու և լավ տեսնում էր, թե ծերունին ինչպես էր նեղլիկ աչքերը մերթ դժվարությամբ կկոցում, մերթ լայն բացում, ջանալով կսպել արցունքները, և ծածուկ սրբում դեմքը: Չէր կարելի թույլ տալ, որ Էլխոն տեսնի պապիկի արցունքները:

՝Չէ՞ որ տունդրայում տղամարդիկ երբեք չեն լալիս:

# Ս Ա Հ Մ Ա Ն Ա Պ Ա Հ

*ՍԵՐԳԵՅ ՎԱՐԴԱՆՅԱՆ*

Սահմանապա՛հ,
Դու կանգնում ես այդտեղ
Որ սահմանից այս կողմ
Փաթիլներն իջնեն
Հեզորեն
Միր փոքրիկ ափերին,
Որ ծաղիկները բացվեն՝
Չփակվելու համար,
Որ գետերի հոսքը
Զկնիկներ բերի՝
Մեր կարթերը ճոճելով,
Որ առավոտյան
Առանց տագնապի
Մեզ կանչի դպրոցի զանգը,
Որ փոքրիկը
Դասարանում նստած,
Նկարի թղթին
Սահման
Եվ հեռվում
Սահմանապահ՝
Զենքը ամուր սեղմած
Ձեռքերում:

Նկ. ԿԱՐԵՆ ՄՄԲԱՏՅԱՆԻ






# Օ Տ Ա Ր Ը

*ԼԻՊԱՐԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ*

*Մի ուշ երեկո հայրս գոմից տուն գալով՝ ասաց.*

*— Կովը ծնեց, մի չալպտուրիկ հորթուկ ունեցանք:*

*Ես ուրախությունից վեր թռա՝ ուռա՜...*

*Առավոտյան շուտ արթնացա քնից: Գոմում Մարալ կովի կողքին, երերուն ոտքերի վրա հազիվ կանգնել էր Չալպտուրիկը (մենք այդպես էլ անվանակոչեցինք նորածին հորթուկին): Մայրը քնքուշ մզզում էր ու լիզում նրա մեջքը, ճակատն ու դունչը:*

*Հորթուկը ոչինչ չէր հասկանում: Նա դեռ չէր ճանաչում իրենից քիչ հեռու կանգնած չարաճճի ուլիկին, որ քսան օրական էր և հպարտ ցատկոտում էր, ոչ էլ գառնուկին, որ թեև ուլիկից խաղաղ էր, սակայն արհամարհանքով էր նայում նորածին, դողդողացող հորթուկին:*

*— Հայրի՛կ,— հարցրեցի ես,— Չալպտուրի՞կն էլ է վազվզելու ուլիկի նման:*

*— Շուտով,— ասաց հայրս,— մի քանի օրից:*

*Հավատալս չեկավ. այնպե՜ս թույլ ու խեղճ էր հորթուկը այդ պահին: Հիմա շատ եմ ցավում, որ չհավատացի հորս խոսքերին, որովհետև...*



Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

*— Հորթն աչքիս լավ չի երևում,— հաջորդ օրը հայրս տխուր դիմեց մորս,— փշաքաղված է, կուրծք չի վերցնում:*

*Մայրս անհանգստացավ: Նա այնքան հույսեր էր կապել կովի հետ. կծնի, կաթ կտա ու կկերակրի տան երեխաներին: Եթե նրան բան պատահի՞...*

*Գյուղի անասնաբույժը Չալպտուրիկին զննեց, զննեց, բայց չկարողացավ որոշել հիվանդությունը:*

*— Անառողջ է ծնվել մորից, սրա բանը դժվար է,— ասաց նա և ինչ-որ դեղի անուն տալով՝ գնաց:*

*Մի անքուն գիշեր էլ անցկացրինք: Հաջորդ օրը Չալպտուրիկը սատկեց...*

*Ավելորդ է պատմել մեր տխրությունը, իսկ մորս ու հորս մտահոգում էր նաև կովի կթվելու հարցը:*

*— Առանց հորթի կցամաքի,— ասացին նրանք:*

*Հայրս գնաց հորթ փնտրելու:*

*Կոլտնտեսության կովերից մեկը սատկել էր: Նրա նոր ծնված հորթը մնացել էր որբ: Նախագահն ասել էր հորս.*

*— Տա՛ր, մինչև աշուն կպահես, կովը կկթվի, մեր հորթն էլ կմեծանա: Աշնանը մոզի դարձած ետ կբերես:*

*Պայմանը երկու կողմերի համար էլ ձեռնտու էր:*

*— Մարա՛լ ջան, բերել եմ, քեզ հորթ եմ բերել,— տխուր ասաց հայրս, օտար հորթուկին մոտեցնելով կովին: Մարալը անհանգիստ շարժումներ արեց. չէր ուզում ընդունել Օտարին: Հայրս ստիպված դիմեց խորամանկության: Նա սատկած Չալպտուրիկի մորթին փաթաթեց Օտարին և նորից մոտեցրեց: Կովը տխուր բառաչեց, հոտոտեց. իր ձագի հոտն առնելով՝ խաղաղվեց: Հորթուկը սկսեց ծծել: Մարալը լիզում ու լիզում էր ձագի մորթին, որին կորցրել ու գտել էր, կարոտե՜լ, կարոտե՜լ...*

*Մայրս դույլը ձեռքին գոմ մտավ, կթեց: Հայրս կարծես մի քիչ հանգստացավ: Սակայն կենդանին չէր հանգստանում. երբեմն-երբեմն դառնում էր հորթի կողմը, ուշադիր զննում, նույնիսկ փորձում հարու տալ, բայց իր ձագի հոտն առնելով՝ կրկին խաղաղվում էր:*

*Օրեցօր չորացավ ու սմքեց Չալպտուրիկի մորթին, երկի պակասեց նաև հոտը, բայց Մարալը դեռ լիզում էր այն: Գուցե զգո՞ւմ էր, որ իր հորթի մորթու տակ իր կուրծքն է ուտում օտար մի հորթուկ: Եվ գուցե որդեկորույս մոր բնազդով նաև հասկանո՞ւմ էր, որ Օտարն էլ է որբ մնացել, և խղճալով նրան՝ մայրություն էր անում:*

*Գնալով Մարալը ավելի էր խաղաղվում: Արդեն կարիք չկար կեղծելու: Հայրս հորթի վրայից հեռացրեց Չալպտուրիկի չորացած մորթին: Ու երբ Օտարը մոտեցավ Մարալին, այս անգամ նա ոչ մի շարժում չարեց, խեղճ մզզաց և սկսեց լիզել նրան:*

*Օտարն այլևս օտար չէր...*



Իմ ուսանողական տարիներին դեռևս կարիք կար մարդկանց համոզելու, որ գիտության զարգացումը անխուսափելիորեն կապված է պրակտիկ կյանքի պահանջների, տնտեսության հետ: Այժմ ոչ ոք դրան չի կասկածում:

Դեռևս 30-ական թվականներին գիտությունը քչերին էր մատչելի: Այժմ գիտությամբ, գիտա-հետազոտական աշխատանքներով զբաղվում են հարյուր հազարավոր, միլիոնավոր մարդիկ: Գիտությունը շատ բան է տալիս հասարակությանը, բայց և շատ

## „ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՀԱՆՋՈՒՄ Է

*Պատմում է ֆիզիկա-մաթեմատիկական գիտությունների դոկտոր ԻԳՈՐ ԳՈԼՈՎԻՆԸ*

բան է պահանջում հասարակությունից: Ամերիկացիներն ասում են. հարկատուն ուզում է իմանալ, թե հատուն ի՞նչի է նա վճարում: Գիտությանը սնում է հասարակությունը: Միջոցների մի մասը, որը կարող էր ծախսվել կենցաղի, շքեղության, առօրյա բարեկեցության վրա, հասարակությունը հատկացնում է գիտությանը, և, անշուշտ, գիտնականներից պահանջում է ծախսված գումարի համար հաշիվ տալ, թե ո՞ւր գնացին դրանք:

Բայց եթե XIX դարի գիտության խնդիրը շրջապատող աշխարհը ճանաչելն էր, և ճնշող մեծամասնությամբ հետազոտողն ուսումնասիրում էր այն, ինչ գոյություն ուներ իրենից անկախ, ապա այժմ հետազոտությունները մեծ մասամբ գնում են ստեղծելու և ստեղ-

---

## Թևավոր խոսքեր

### ԱԼՄԱ ՄԱՏԵՐ

Եթե լատինական այս արտահայտությունը թարգմանենք հայերեն, կստացվի «կերակրող, սնող մայր» (ալմա—կերակրող, սնող, մատեր—մայր): Սակայն դեռ շատ վաղուց, միջնադարյան ուսանողները այսպես էին կոչում այն ուսումնական հաստատությունները, ուր նրանք ստացել էին կրթություն՝ «հոգևոր սնունդ», որոնց սաներն էին համարում իրենց:

Գիտնականներն ու ուսանողները հիմա էլ, կեսկատակ-կեսլուրջ, գործ են ածում այս արտահայտությունը:

### ԱԼՏԵՐ ԷԳՈ

Եթե լատիներենից թարգմանելու լինենք «Ալտեր էգո» արտահայտությունը՝ կստացվի «երկրորդ ես»:

Այսպես մենք երբեմն կոչում ենք մեր ամենամտերիմ ընկերոջը, ում վստահում ենք այնպես, ինչպես ինքներս մեզ: Այդ դարձվածքը մնացել է եվրոպական մի շարք պետություններում ընդունված երբեմնի այն սովորությունից, երբ արքան իր իշխանությունը հանձնում էր որևէ փոխարքայի, նրան շնորհում էր «արքայական երկրորդ ես» կամ «ալտեր էգո րեգիս» կոչումը: Նման սովորության հայրենիքը համարվում է Սիցիլիան: Իսկ այս խոսքն արտասանող առաջին մարդը հույն փիլիսոփա Զենոնն էր, որն ապրել է մ. թ. ա. 3—4-րդ դարերում:

Լատինական «էգո» (ես) բառը բոլորին հայտնի «էգոիստ» (եսասեր) բառի արմատն է:

### ԱԼՖԱ ԵՎ ՕՄԵԳԱ

«Ալֆա»-ն հունական այբուբենի առաջին տառն է, որ նշանակում է՝ «ա» հնչյունը, իսկ «օմեգա»-ն («օ» հնչյունը) այբուբենի վերջին տառը: «Ես եմ ալֆան և օմեգան, սկիզբն ու վախճանը, առաջինն ու վերջինը»,—ասում է իր մասին բիբլիական աստվածը:

«Ալֆայից մինչև օմեգա» արտահայտությունը նշանակում է «ամբողջովին», «ծայրից-ծայր»:

### ԱՐՔԻՄԵԴԻ ԼԾԱԿԸ

Ըստ ավանդության Սիրակուզա քաղաքի իմաստուն ֆիզիկոս Արքիմեդը (278—212 մ. թ. ա.) հայտնաբերելով լծակի օրենքը, ասել է. «Ցո՛ւյց տվեք, թե որտեղ կանգնեմ, և ես կշարժեմ երկրագունդը»:

Այժմ այդ աֆորիզմն ավելի հաճախ արտասանվում է այսպես. «Տվեք ինձ հենման կետ, և ես շուռ կտամ երկրագունդը»:

# ՄԵԾԱԳՈՒՅՆ ԱԶՆՎՈՒԹՅՈՒՆ"

ծելու նյութի գոյության նոր պայմաններ, նոր ձևեր: Ասենք, օրինակ, պինդ մարմինների ֆիզիկայի ասպարեզում խոր տեսական խնդիր է՝ ստեղծել գերհաղորդիչներ, որոնք կարողանան աշխատել բարձր ջերմաստիճանի պայմաններում, ստեղծել այնպիսի վիճակ առարկաների համար, որպիսիք բնության մեջ չկան:

Կան ասպարեզներ, որոնց մասին ասվում է. մի՛ սպասեք ձեր կենդանության օրոք նրանցից գործնական արդյունք, այդպիսին է, օրինակ, բարձր էներգիայի ֆիզիկան, որն աներևակայելի թանկ է նստում: Դա ֆունդամենտալ գիտություն է, նրա վրա պետք է ծախսել, զարգացնել, թեև տեսանելի ապագայում չի ենթադրվում նրանից գործնական հետևանքներ: Իսկ կա և այնպիսի մասնաճյուղ, ինչպիսին ջերմամիջուկային պրոբլեմից ծնված տաք պլազմայի գիտության ֆունդամենտալ մասնաճյուղն է: Սրա հետազոտությունը նույնպես շատ թանկ է նստում, բայց հաջող լուծման դեպքում խոստանում է գործնական մեծ արդյունքներ:

Ֆիզիկայի հետազոտության մասշտաբները աճելի են: Հիմա առավել մեծ նշանակություն է ստանում աշխատանքի ռացիոնալ մեթոդներ գտնելը, որը պատկանում է արդեն ոչ թե ղեկավարին, այլ ամբողջ երկրին, երբեմն նույնիսկ ամբողջ դարաշրջանին: Այնպես աշխատելու համար, ինչպես այժմ պահանջվում է, հարկավոր է ապրել ռացիոնալ կյանքով:

Նոր խնդիր առաջադրելու և լուծելու համար գիտնականը պետք է աշխատի կոլեկտիվի հետ, ամենաթանկ սարքավորումներով, որոնցից չի կարող մենմենակ գլուխ հանել, նա պետք է խորապես և ամբողջապես գիտենա ժամանակակից փորձարարական տեխնիկայի հնարավորությունները: Ուրեմն և հարկավոր է համոզել, ներգրավել տարբեր մասնագիտության մարդկանց, ամբողջ կոլեկտիվներ, հարկավոր է լինել գաղափարի առաջատար: Հենց մեր ժամանակներում է ձևավորվել ստեղծագործող գիտնականի մի նոր տիպ, որպիսին է գիտնական կազմակերպիչը:

Ֆիզիկայի ասպարեզի յուրաքանչյուր հետազոտող այսօր օգտվում է մեծ կամ փոքր կոլեկտիվի աշխատանքից: Այժմ բացառիկ դեպքում են էքսպերիմենտները կատարում մեկ կամ երկու գիտնական:

Բայց և միաժամանակ ոչ մի կոլեկտիվ չի կարող փոխարինել տաղանդավոր գիտնականին: Գիտության մեջ ամենաարսափելին հավաքված միջակությունների գործ վանգվածն է:

Կոլեկտիվում, ուր բացակայում են աչքի ընկնող փայլուն մարդիկ, կարող են ծախսվել վիթխարի միջոցներ առանց մեծ արդյունքի, անօգուտ: Եվ ընդհակառակը, փայլուն մարդը կարող է մեծ խնդիրներ լուծել համեմատաբար փոքր ուժերով:

Դրա շատ օրինակները կան ինչպես անցյալում, այնպես էլ այսօր:

Երբ ծագում է խնդիրը և գտնվում է ուժեղ ղեկավար, ընդունակ խոր մտածելու և ընդհանրացման, նրա շուրջն հավաքվում են մարդիկ, որոնց և հրապուրելով նա տանում է իր ետևից: Եվ դա տալիս է գիտական առավելագույն արդյունքը: Դրա լավագույն օրինակներից է Նիլս Բորի Կոպենհագենի դպրոցը, ուր հավաքվեցին աշխարհի չորս կողմից մարդիկ՝ նրա հետ աշխատելու ժամանակակից ֆիզիկայի կարևորագույն պրոբլեմների վրա:

Փայլուն մարդու շուրջը հավաքվում են փայլուն մարդիկ. սա նույնպես օրենք է: Նա գրավում է պրոբլեմի անսովորությամբ կամ վիթխարիությամբ, որին գլխովին նվիրվում է և ինքը:



Այդպիսին էր Իգոր Վասիլևիչ Կուրչատովը:

Երիտասարդ Կուրչատովը դեռևս 20-ական թվականներին գնում է նշանավոր ֆիզիկոս Ա. Ֆ. Յոֆֆեի մոտ և մեկեն հնարավորություն է ստանում աշխատել այնպես, ինչպես պահանջում էր իր տաղանդը, ավյունը, վիթխարի եռանդը:

Կուրչատովի աշխատանքի ոճը իր տեմպերամենտով արմատապես տարբերվում է Յոֆֆեի աշխատանքի ոճից: Բայց ֆիզտեխի կոլեկտիվում գործում էր մի ըմբռնում, որ ներարկել էր Յոֆֆեն՝ նվիրվել գիտությանը ամբողջովին և առանց մնացորդի, և ողջ կյանքը ենթարկել գիտական ստեղծագործությանը:

Գիտությունը մարդուց պահանջում է մեծապես ազնիվ լինել իր մտքի և արարքների մեջ: Քանզի, եթե կանխամտածված կերպով ջանքեր ես անում ցանկալին ներկայացնել իբրև իրական, գիտության մեջ երբեք ու երբեք հաջողության չես հասնի: Հարկավոր է գիտական վերլուծություն, անխնա պահանջկո-







# ԷԼՄԱՅԻ

ԱՐՏԱԿ ՌՈՍԿԱՆՅԱՆ

*Մեր նախնիներին հայտնի էլեկտրական երևույթներից են նաև սուրբ Էլմայի կրակները:*

*Այդ առասպելական աստղերի հետ կապված էլեկտրական երևույթների մասին ամենահին տեղեկությունը կարդում ենք Հուլիոս Կեսարի աֆրիկյան արշավանքներն ամփոփող «Կեսարի մեկնաբանությունները» գրքում: Կեսարը գրում է, որ մի գիշեր հինգերորդ լեգեոնի նիզակների երկաթյա ծայրերը դարձել էին հրավառ:*

*Իսկ Սենեկան երկու հազար տարի առաջ նկարագրել է, թե ինչպես որոտի ժամանակ ծիտիկների նման երկու աստղեր են իջել ու թառել նավախելին՝ ի ուրախություն նավաստիների: Զույգ թվով կրակների այցը ընդունվել է որպես բարության խորհրդանշան, իսկ կենտ թվով կրակների փայլատակման դեպքում ծովագնացները հուսահատվել են և կործանումը թվացել է անխուսափելի:*

*Դարեր անց Քրիստափոր Կոլումբոսի որդին տեղեկացնում է, որ նավաստիները այլևս չէին վախենում փոթորիկներից, երբ երևում էին սուրբ Էլմայի կրակները:*

*«1493-ի հոկտեմբերին,— գրում է նա,— երբ տեղատարափ անձրևի և ուժեղ որոտի պահին երևացին սուրբ Էլմայի կրակները՝ մերթ մեկ, մերթ երկու այրվող կերոնների նման, նավաստիները լաց եղան ուրախությունից»:*

*Ուրեմն միջնադարում արդեն հրաժարվել էին կենտ թվով կրակների երևալը անհաջող նավարկության նշան համարել, կարևորն այն էր, որ երևար ու..., վերջ:*

*Ցլամարիոնի «Ատմոսֆերա» գրքում նկարագրված է սուրբ Էլմայի առավել աչքի ընկնող, մեծ բոցավառությամբ ուղեկցվող կրակների երևալը Բալեարյան կղզիներից մեկում. «Հանկարծ պատեց ահարկու մութը, որոտն ու կայծակը կարծես գաղտագողի հայտնվեցին, ես իջեցրի բոլոր առագաստները: Նավի վրա ավելի քան երեսուն տեղերում երևացին սուրբ Էլմայի կրակները: Նավախելին ամրացված հողմացույցին իջածը կլիներ մոտ մեկուկես ֆունտ երկարության: Ես խնդրեցի նավաստիներից մեկին, որ գնա և ինձ մոտ բերի այն: Հանկարծ լսվեց նավախել հասած նավաստու ձայնը. «Ծշշում է, ինչպես խոնավ վառոդով լցված հրթիռը»: Պատվիրեցի ինձ մոտ բերել հողմացույցով հանդերձ: Բայց մինչև նավաստին կհաներ հողմացույցը, կրակը ոստնեց ավելի հեռու, որտեղից բերելն ար-*

տություն, որպեսզի երբեք ենթադրության վրա կառուցված գեղեցկատես պատկերը չներկայացվի իբրև իրականություն, քանի դեռ այն ստուգված չի տրամաբանությամբ, հիմնավորված չի փորձարարական փաստերի մեկնաբանությամբ: Մտքի խստությունը, մտածողության ազնվությունը, արտահայտությունների և ձևակերպումների մեջ երբեք կոմպրոմիսի չգնալը պարտադիր պայման է յուրաքանչյուր դպրոցի գիտնականի համար: Այդպիսին էր Կուրչատովը, այդպիսին էր նրա դպրոցը:

Այդ, թերևս, կարևորագույն կողմն է յուրաքանչյուր գիտական հետապնդության: Գիտությունը և հաջողությունները այն մարդկանց, որոնք հետապնդում և հայտնագործում են նորը, հայտնագործում են բնության օրենքները և ենթարկում բնության օրենքներն իրենց, մարդու ամբողջական կերպարով է պայմանավորված, նրա ողջ բարոյական կերպարով, նրա ողջ քաղաքացիական գործունեությամբ: Մարդը չի կարող գիտության մեջ լինել անբասիր կերպով մաքուր, եթե նա կյանքում երկերեսանի է և ստոր: Իգոր Վասիլևիչ Կուրչատովին աշխատակիցները անվերապահորեն հավատում էին և՛ իբրև գիտնականի, և՛ իբրև խորապես սկզբունքային, ազնվագույն, քաջարի մարդու, որովհետև գիտեին, որ նրա այոն՝ իրոք այո էր, ոչը՝ իրոք ոչ:

Կուրչատովի համար կարևորը նպատակադրվածին հասնելն էր, խնդրի լուծումը: Նրա մտերմավորագույն ընկեր Կիրիլ Դմիտրիևիչ Սինելնիկովը այլ բան էր ասում. «Ինձ համար այնքան էլ կարևոր չէ նպատակադրվածին հասնելը, ինձ հրապուրողն հետապնդության պրոցեսն է»: Ահա և երկու տարբեր կարծիք. մեկի համար կարևորագույնը արդյունքն է, իսկ մյուսի համար արդյունքը չէ կարևոր, այլ՝ գեղեցկատիպ, նրբին էքսպերիմենտները; հրապուրիչ է պրոցեսը: Թեև նրանք երկուսն էլ նույն՝ ֆիզիկա-տեխնիկական ինստիտուտի սաներ են:

Ովքեր աշխատել են Կուրչատովի հետ, նրանց մեծ մասի հաշվետվությունների և եզրակացությունների մեջ դուք հազվադեպ քիչ կգտնեք բուն պրոցեսի նկարագրություն, բայց փաստերի համադրումն ու տրամաբանությունը անառարկելիորեն կտանեն դեպի հաստատված գիտական եզրահանգումը:



# ԿՐԱԿՆԵՐԸ

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

*դեն անհնար էր: Որոշ ժամանակ այնտեղ մընալուց հետո, կրակն աստիճանաբար անհետացավ»:*

*Նման փաստերի և նկարագրությունների թիվը շատ է, իսկ Էլմայի կրակների գաղտնիքը բացահայտող մեկնաբանություններ չեն հանդիպում ոչ միայն հին, այլև վաղ անցյալի գիտական գրականության մեջ: Նրանք միշտ էլ մնացին չարագուշակ ու անհասկանալի, մինչև որ բացահայտվեց նրանց էությունը: Իսկ նրանց էությունը գրեթե նույնանում է կայծակի էության հետ, թեպետ արտաքնապես նրանք նման չեն բոլորովին: Տարբերությունն այն է, որ այդ կրակները չեն ուղեկցվում որոտով, աղմուկով, հանկարծահաս վտանգով, ինչպես կայծակները, և չեն պարպվում միանգամից, այլ աստիճանաբար, մարմրելով, կարծես հուսելիս լինեն տվյալ մետաղյա իրի սայրից, որի վրա ընկել են: Այդ կրակների ուսումնասիրումը նույնքան դժվար եղավ, որքան կայծակինը, բայց այնուամենայնիվ պարզվեց, որ դա էլեկտրական լիցքերի պարպում է և ուրիշ ոչինչ:*

*Հիմա, օրինակ, այդ խորհրդավոր կրակները իրենց հերթափոխն են անցկացնում գործարանային վերձիգ խողովակների ծայրերին: Ընդ որում այդ չարագուշակ կրակները հիմա բարի գործ են կատարում: Նրանք թույլ չեն տալիս, որ ծխի հետ միջավայր դուրս գան վառելիքի վնասակար մնացորդները: Ի դեպ, միայն այդ մնացորդի մեկ տոկոսին է հաջողվում հաղթահարել սուրբ Էլմայի կրակների թագաձև լիցքակույտի ստեղծած էլեկտրական դաշտը, որի «աղբյուրը» տվյալ դեպքում խողովակի ծայրին ամրացված բարակ հաղորդալարն է:*

*Այդ թագաձև լիցքակույտը ավելի ռոմանտիկ կիրառություններ է ցուցաբերում տիեզերական թռիչքների ժամանակ. այն դառնում է տիեզերանավը «հրող» ուժի աղբյուր: Տիեզերանավի սուր սայրերից շարժմանը հակառակ «հոսող» պարպումը, շարժման քանակի պահպանման օրենքի համաձայն, առաջ է մըղում տիեզերանավը և, փաստորեն, դառնում լրացուցիչ վառելանյութ:*

*Ուրեմն հեքիաթային այդ կրակները այսօր ծառայում են մարդկանց՝ առանց նշույլ անգամ ահաբեկելու:*

*Ինչ վերաբերում է նրանց բնույթին և էությանը, ապա նրանք ոչ մի կապ չունեն աստղերի հետ և, ինչպես կայծակը, նրանք էլ մթնոլորտում տեղի ունեցող էլեկտրական երևույթներ են:*



Եվս մեկ օրինակ, ճիշտ է, դեռևս ոչ այնքան խոշոր մասշտաբի. ինձ մոտ աշխատում է աչքի ընկնող մեկը՝ Վալերի Չույակովը, որը վերջերս Վլադիմիր Արսենինի հետ ստացավ լենինյան կոմերիտմիության մրցանակը: Արագ մտածող մարդ է, հաստակ տրամաբանության տեր, և գտել է իր գործընկերը՝ հանձին Արսենինի և սկսել արագ զարգացնել մի նոր ուղղություն պլազմայի ֆիզիկայի ասպարեզում: Եվ կոլեկտիվը՝ ինժեներներ, լաբորանտներ, և ողջ տեխնիկան, որ կա նրանց ձեռքի տակ, սկսեցին տալ նոր, օրիգինալ անսպասելի, առանց նրանց անհնարին, արդյունքներ: Եթե Չույակովն ու Արսենինը չունենեին այդպիսի միջավայր և չստանային նման օգնություն, չէր լինի և նրանց աչքի ընկնող աշխատանքը: Աչքի ընկնող անհատականությունը գիտության մեջ այն է, ինչ որ երգչի, կոմպոզիտորի համար տաղանդը:

Մեծ գիտնականի, ինչպես և մեծ արվեստագետի համար ժամանակը միշտ քիչ է: Չայկովսկին համարում էր օրը կորած, եթե մի բան չէր գրել այդ օրը: Այդ հոգեբանությունը բնորոշ է և իսկական գիտնականին: Անցնող ամեն մի օրը պետք է նոր բան բերի այն ասպարեզի համար, որ ասպարեզում նա աշխատում է:

Արվեստը, գրականությունը անհրաժեշտություն է գիտնականի կյանքի և աշխատանքի համար: Դա ո՛չ միայն հանգիստ է: Առանց կյանքի լայն ընկալման գիտնականը չի ունենա ստեղծագործական ակտիվություն իր ասպարեզում: Կարող է լինել նեղ մասնագետ, կլուծի մեծ հմտություն պահանջող խնդիրներ, բայց պատվերով, կհաշվի որևէ կառուցվածք, կկատարի շատ կոնկրետ մի բան: Եթե գիտնականն ընդունակ չէ հրապուրվել գրականության ու արվեստի նորություններով, նա չի կարող հրապուրվել և գիտական նոր մտքերով: Ես կարծում եմ դրանք կապված են իրար հետ: Նա, ով արձագանքում է արվեստի երևույթներին՝ թատրոն, երաժշտություն, ունենում է ընդունակություն և հնարավորություն՝ լայն արձագանքելու բազմակյան մըտքերի ու բազմազան հայացքների, նաև գիտության մեջ: Նրա գիտական ստեղծագործությունն էլ է հարուստ ու լայն լինում:

Մտածելու հնարավորությունը այն ամենաարժեքավորն է, որ տրված է մարդուն:

Թարգմ. Ս. ՍԱՀԱԿՅԱՆԻ

# ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍԱՄՎԵԼ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Վերջին դասարաններում սովորում էի միջակ: Մեծ եղբայրս հաճախ էր գլուխն օրորելով ասում.

— Դու ի՞նչ պետք է դառնաս, ի՞նչ:

Իսկ ես դեռ չէի որոշել: Պարզապես սիրում էի երազել և հավատացնում էի ինձ, որ երազներս իրենք իրենց կկատարվեն:

Այդպես երազելով, մի կերպ ավարտեցի դպրոցը: Եվ գործերս հանձնեցի մանկավարժական ինստիտուտ: Դե՛, պարզ չէ՞, որ հենց առաջին քննությունից կտրվեցի: Դասախոսը նշանակելով անբավարար, ինձ խորհուրդ տվեց համառել, չծուլանալ, մի տեղ աշխատել և պատրաստվել հաջորդ տարվա ընդունելությանը:

Հիշում եմ նրա խոսքերը. «Հուսահատվելը մարդուն վայել չէ»:

Նույն օրվանից սկսեցի աշխատանք որոնել:

Մի անգամ, դանդաղ քայլերով անցնում էի Թումանյան փողոցով ու հանկարծ ինձ գրավեց շենքի առաջին հարկից եկող համաչափ աղմուկը: Մոտեցա, ցանցկեն պատուհանից ներս նայեցի: Տեսա գրքեր, անթի՜վ, անհամար գրքեր: Մարդիկ աշխատում էին մեքենաների ու սեղանների մոտ, գրքեր էին կազմում: Ես մի քանի րոպե այդպես գամված մնացի պատուհանին: Եվ այդ ընթացքում ծնվեց այն համարձակությունը, որ հաջորդ պահին վճռականորեն ինձ տարավ տպարանի դարպասից ներս: Բարձրանում էի կադրերի բաժնի վարիչի մոտ և վեր տանող ամեն մի աստիճանի վրա ավելի էի համոզվում, որ ինձ դուր էր եկել կազմարարի մասնագիտությունը: Մինչ հուզմունքով պատրաստում էի իմ խոսքը, որ ասելու էի խորշոմած դեմքով ծեր կնոջը, նա խոսում էր մի մողայիկ հագնված, ինքնավստահ երիտասարդի հետ: Վերջինս բարձրաձայն պարծենում էր, որ ինքը շատ տեղերում է աշխատել, երեք ամիս՝ էլեկտրիկ, հինգ ամիս՝ սլաքավար, քառասուն օր՝ երկրաբանների հետ և այլն, և այլն: Պահանջում էր բարձր աշխատավարձով աշխատանք, քանի որ որոշել էր ամուսնանալ:

Կինը համբերությամբ լսելուց հետո, երիտասարդին առաջարկեց թուղթ կտրողի կամ տպագրիչի օգնականի տեղ:

— Արհեստին լավ տիրապետելու դեպքում բարձր աշխատավարձ կստանաք, հնարավորություններ կան և առաջ գնալու,— ավելացրեց նա:

— Տպագրիչը յուղի, մրի հետ գործ ունի,— ասաց երիտասարդը,— իսկ թուղթ կտրելն ի՞նչ աշխատանք է որ...

— Ուր էլ գնաք,— նկատեց ծեր կինը,— ինչ արհեստ էլ ընտրելու լինեք, նախ մտածե՛ք՝ սիրո՞ւմ եք այն, թե՞ ոչ, և ապա՝ մի՛ արհամարհեք ոչ մի աշխատանք:

— Կմտածեմ,— կծու ասաց երիտասարդն ու դուրս գնաց:

Հերթն ինձ հասավ: Հայտնեցի իմ ցանկությունը:

— Տվեք ձեր փաստաթղթերը,— ասաց կինը:

Եվ հաջորդ օրվանից աշխատանքի անցա կազմատանը: Իմ առաջին ուսուցիչները դարձան վարպետ Թորգոմը, Նիկոլը, Ցաշան: Ծալող մեքենա կար, որ անվերջ խշշում էր ջրվեժի պես, և մամուլները սլանալով նրա գլանիկների արանքով, ծալվում էին մի քանի տակ ու դարսվում հատուկ սեղանների վրա: Արագաշարժ Էմման հավաքում էր համարների հաջորդականությամբ և յուրաքանչյուր գիրք առանձին-առանձին տալիս վարպետ Անժիկին, որն աշխատում էր կարող մեքենայի վրա: Անժիկը ուշադիր, անքթիթ հայացքով հետևում էր իրար կարվող մամուլների սյունին, որ առաջ՝ էր ձգվում մեքենայի փոքրիկ թունելից: Մամուլները կարվում էին մառլյայով, և գիրքն ամբողջանում էր: Սոֆիկն ու Մառլենան դրանք տանում էին կտրիչի մոտ, որի վրա աշխատում էր Ցաշան: Կտրիչը գիրքը կտրում-հարթեցնում էր երեք կողմից, որից հետո այն անցնում էր կազմարարների երկար սեղանին: Հմուտ,

# ՄՐՋՅՈՒՆԸ

ԱՐՏԱՇԵՍ ԾԱՎՐՅԱՆ

Հանկարծ կկվի աչքը առավ,
Որ դեմուդեմ՝ ճամփամիջում
Հազար անգամ ընկավ ելավ
Հատիկ տանող մի ժիր մրջյուն:

Բայց չպոկվեց ծանր բեռից,
Նա շրջանցեց կոշտ ու կապան,
Անցավ դժվար արգելքներից,
Բռնեց իր տան անհարթ ճամփան:

— Եղբա՛յր,— դիմեց ապշած կկուն,—
Այդ ի՞նչն է քեզ հարկադրում,
Որ տանջալով՝ ամբողջ օրը
Քո քաշից շատ բեռ ես կրում:

Մրջյունն ասաց թևավորին.
— Մեծ է թեև համայնքը մեր,
Ապրողների թիվն՝ անհաշիվ,
Բայց մենք չունենք ծրիակեր,
Չենք տա մեկին ավել բաժին:

Աշխատում ենք մի մարդու պես,
Բաշխում արդար գործն ու կերը,
Ահա ինչո՛ւ չեմ զգում ես՝
Ո՞նց եմ տանում հսկա բեռը:

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ























## ԱՅԴ ՋԱՐՄԱՆԱԼԻ ՖԻԶԻԿԱՆ

արագաշարժ կազմողները անթարթորեն սոսնձում էին պատրաստի կազմերի ներսի կողմերն ու գիրքը դնելով մեջը՝ ծալում և հրում դեպի սեղմիչը: Իսկ երբ բարձրանում էր մամլիչը, գիրքն իր վերջնական տեսքն առած, անցնում էր ստուգողներին: Նրանք զգուշությամբ թերթում էին, նայում, թե սպիտակ էջեր չկա՞ն: Այդպիսի գրքերը խոտանվում էին, ենթակա չէին վաճառքի:

Հետո սկսվում էր վարպետ Նիկոլի աշխատանքը: Նա փաթաթում էր գրքերի կապոցներն ու շարում իրար վրա, որպեսզի մեքենան գրքերը տանի պահեստ, այնտեղից էլ՝ գրախանութները:

Այսքանը ես պատմեցի մի շնչում, բայց մի շնչում չսովորեցի: Այդ տևեց շաբաթներ, ամիսներ:

Ես հաճույքով էի աշխատանքի գնում: Հաճելի էր այն գիտակցությունը, որ իմ աշխատանքային ընկերների հետ ամեն օր ես մարդկանց համար ստեղծում եմ հոգևոր սնունդ՝ գրքեր: Շատ չանցած ես հանձնեցի քննություն և դարձա երկրորդ կարգի կազմարար: Այդ ինձ այնքան ոգևորեց, որ ես սկսեցի նույնպիսի աշխատասիրություն ցուցաբերել նաև ուսման մեջ: Ես հիմա կարող եմ վստահ ասել, որ այդ երկուսն էլ օգնեցին միմյանց: Լավ աշխատելուց հետո կարողանում էի և լավ պարապել: Արդյունքը երևաց հաջորդ տարվա գարնանը: Ես ընդունվեցի ինստիտուտ, հետո գնացի բանակ, վերադարձա, շարունակեցի ուսումս, ավարտեցի...

Անցել է տասներկու տարի:

Շատ դեպքեր ու մարդիկ, շատ ուրախություններ ու տխրություններ մոռացվեցին, բայց ես չմոռացա այն մասնագիտությունը, որ ինձ սովորեցրին 6-րդ տպարանի կազմարարները: Հիմա ավելի, քան այն ժամանակ, պարզ, շատ պարզ հասկանում եմ, որ նրանք ինձ սովորեցրին ոչ միայն կազմարարի արհեստը, այլև սովորեցրին աշխատել: Եվ դա ամենակարևորն է:

Իսկ մնացա՞ծը...

Նվիրվածությունն է ընտրած մասնագիտությանը: Չպետք է դավաճանել նրան: Իմ մասնագիտության մասին խոսելու այս առիթով ես նորից եղա առաջին վարպետներիս մոտ: Նրանք նորից, ինչպես տարիներ առաջ, աշխատում են իրենց մեքենաների ու սեղանների մոտ: Հանդիպեցի վարպետ Թորգոմին, Նիկոլին, Յաշային, մյուսներին, ողջագուրվեցինք: Երբ ես, մի քանի րոպե լուռ կանգնած նայում էի, թե նրանք ինչպես են վարժ ու հմտորեն, նաև սիրով, կատարում իրենց գործը, մտածեցի, թե արդյո՞ք ես չեմ դավաճանել իմ առաջին մասնագիտությանը, արդյո՞ք ես մեղավոր չեմ նրանց՝ իմ առաջին ուսուցիչների առաջ: Կարծես վարպետ Նիկոլը հասկացավ միտքս ու հարցրեց.

— Հը՞, տասներկու տարի առաջվա սովորածից բան հիշո՞ւմ ես:

— Ինչպե՞ս չէ,— դեռ մի քիչ էլ վիրավորանքով ասացի ես,— որտեղ էլ եղել եմ, հմտորեն օգտագործել եմ իմ մասնագիտությունը, կազմել եմ գրքեր՝ գրադարանների համար, վերանորոգել եմ դասագրքեր ու ալբոմներ, պատրաստել եմ այնպիսի բլոկնոտներ, որպիսիք գրախանութներում իսկ չկան: Ամենուր, ամենուր ինձ հետ է եղել իմ մասնագիտությունը:

Այստեղ էր, որ իմ այդ առաջին վարպետը մի պահ դադարեցրեց աշխատանքը, նայեց ու ժպտալով ասաց.

— Կեցցե՛ս, նշանակում է չես դավաճանել, նա քեզ կյանքում դեռ շա՜տ ու շատ պետք կգա:

— Իհա՞րկե...— ոգևորված բացականչեցի ես:

## ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

«Գիտելիքների աշխարհում» երթուղին ամենասիրվածն է Երևանի Կամոյի անվան միջնակարգ դպրոցում: Պիոներական ջոկատներում ու օղակներում գրքերի քննարկումներ են անցկացնում, հանդիպումներ են կազմակերպում արվեստագետների ու գրականագետների հետ: Իսկ այս ուսումնական տարվա սկզբից, երբ նոր մեկնարկ վերցրեց «Միշտ պատրաստ» երթը, դրանց ավելացավ նաև առարկայական շաբաթների կազմակերպումը:

Յուրաքանչյուր առարկայի նվիրված շաբաթվա ընթացքում բարձր դասարանցիները կենսագրումներ են կարդում պիոներների համար, օգնում են տվյալ առարկայի վերաբերյալ պատի թերթեր հրատարակելուն ու ցուցափեղկեր կազմելուն: Շաբաթվա վերջին օրը երեկո են կազմակերպում և հարց ու պատասխանի, տարբեր խնդիրների ու առաջադրանքների միջոցով կայունացնում են իրենց սովորածը:

Ֆիզիկային նվիրված շաբաթվա վերջին օրն էր: Երեկոյի կազմակերպիչ բարձր դասարանցիները նախ ստուգեցին, թե ինչ է տվել ֆիզիկայի մեկ շաբաթը պիոներներին: Առարկայի դերի և նշանակության վերաբերյալ անցկացված զրույցից, հարց ու պատասխաններից հետո սկսվեց երեկոյի հիմնական մասը՝ ֆիզիկական երևույթների մեկնաբանումը փորձերի միջոցով:

Սեղանին մոտեցավ Երվանդ Ակոպյանը, վերցրեց տետրի մի թերթ, այրեց ու իջեցրեց մածունի շշի մեջ: Այնուհետև շշի բերանին հավկիթ դնելով, կողքի կանգնեց: Մինչ թուղթը անշտապ այրվում էր շշի մեջ, աշակերտները սկսեցին սրախոսել.

—Երվա՛նդ, կրակը բորբոքի՛ր, որ ձուն ջուտ եփվի:

— Թե ձվածեղ ես անում, յո՛ւղ էլ ավելացրու:

_ Բայց դեռ թուղթը լրիվ չէր այրվել, երբ լսվեց ուժեղ աղմուկ և հավկիթը շշի հատակն ընկավ: Բոլորը լռեցին ու նայեցին Երվանդին:

—Ո՞վ կարող է բացատրել, թե ինչ կատարվեց,— դիմելով նստածներին՝ հարցրեց նա:

Թեև դահլիճում շատ պիոներներ կային, բայց պատասխանողների թիվը մեծ չէր: Երվանդը սեղանի մոտ հրավիրեց Մարինե Միսկարյանին:

—Հավկիթի տրամագիծը շշի բերանի ներքնագծից մի փոքր մեծ էր, դրա համար էլ, ներս չէր ընկնում, բայց երբ ներսում այրվող թուղթը կլանեց շշում եղած ողջ թթվածինը, օդի խտությունը նոսրացավ և արտաքին ճնշման ու ներսի ձգողականության ուժի ազդեցության տակ հավկիթը շշի մեջ մտավ: Այդ ուժի մեծության արդյունքն էր նաև այն աղմուկը, որ առաջացավ հավկիթի նեղից շիշ մտնող օդի շփումից,— բացատրեց նա:

Ապացուցելու համար, թե օդի խտության ամենափոքր տարբերությունը ինչեր կարող է անել, Սահակը վերցրեց ջրով լցված լիմոնադի շիշը, լուցկին գցեց նրա մեջ և մատը դնելով շշի բերանին՝ սկսեց կարգադրություններ անել.

— Հրամայում եմ իջնել:

Եվ լուցկու հատիկը իջնում էր շշի հատակը:

—Հրամայում եմ բարձրանալ:

Ու հատիկը նույն արագությամբ ջրի երեսն էր բարձրանում:

Այնուհետև, պճպարարի խորամանկ ժպիտով, դիմեց առջևի շարքերում նստածներին, թե՝ դուք փորձեք կարգադրել: Եվ լուցկու հատիկը կու-հնազանդ կատարում էր բոլորի կարգադրությունները:

Երևույթը բացատրվեց նրանով, որ շշի բերանին մատով սեղմելիս օդի խտությունը մեծանում է և հատիկը ճնշման տակ ընկղմվում է ջրի մեջ, իսկ մատը բարձրացնելիս խտությունը հավասարվում է և լուցկու հատիկը նորից բարձրանում է ջրի երես:

Այսպես, մեկը մյուսից հետաքրքիր փորձեր կատարեցին բարձր դասարանցիները, իսկ այն պիոներները, ովքեր մեկ շաբաթվա ընթացքում մասնակցել էին բոլոր միջոցառումներին, հեշտությամբ էին պատասխանում տրվող հարցերին և մեկնաբանում փորձերի ու ֆիզիկական երևույթների գաղտնիքները:

Եվ այդ կարմանալի առարկան, որ այնքան խորհրդավոր ու բարդ էր թվում, սպասելիք դարձավ նրանց համար, ովքեր եկող տարիներին պետք է ուսանեն այն:

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*



# ԽՈՍՐՈՎԻ ԱՐԳԵԼԱՆՈՑԸ

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*Այն վայրերում, որտեղ կառուցվել են քաղաքներ, գործարաններ, ֆաբրիկաներ, ստեղծվել գյուղատնտեսական կուլտուրաների ընդարձակ ցանքատարածություններ, այնտեղ բույսերի և կենդանիների բազմաթիվ տեսակներ իսպառ ոչնչացել, անհետացել են: Բազմաթիվ կենդանիներ հարկադրաբար հեռացել են քաղաքակիրթ խիտ բնակեցված երկրներից, ապաստան փնտրելով կուսական բնության դեռևս անաղարտ, մարդու կողմից անձեռնմխելի մնացած անկյուններում՝ լեռներում, անտառներում, անապատներում, տափաստաններում:*

*Մակայն արդյունաբերության և գյուղատնտեսության բուռն կարգացման հետևանքով, հատկապես վերջին տարիներին, արագորեն ոչնչանում են նաև բնության*

այս վերջին ապաստանները և կենդանիների ու բույսերի նորանոր տեսակներ մատնվում անխուսափելի ոչնչացման:

Իսկ ինչպե՞ս պահպանել կենդանիների ու բույսերի անհետացող ու հազվագյուտ տեսակները: Չէ՞ որ դրանք խիստ անհրաժեշտ են և իրենց կարևոր դերն են խաղում բնության ընդհանուր հաշվեկշռում:

Դեռևս 20-րդ դարի սկզբին կանապան երկրներում կազմակերպվել են ազգային պարկեր և արգելանոցներ, որտեղ արգելվում էին որսը, անտառահատումները և հողերի մշակությունը: Նման վայրերում ապաստան գտած կենդանիները և բույսերը ոչ միայն պահպանվում էին ոչնչացումից, այլև արագորեն աճում ու բազմանում: Հաշվի առնելով այս հանգամանքը, երկրագնդի վրա կանապան երկրներում ստեղծվեցին մի շարք նոր արգելավայրեր, որոնք ներկայումս վերածվել են գիտական խոշոր կենտրոնների:

Նման արգելավայր է նաև մեր հանրապետությունում գտնվող հռչակավոր Խոսրովի անտառը:

Պատմական տեղեկություններ կան այն մասին, որ մեր թվարկության 330—339 թվականներին Խոսրով 2-րդ Կոտակ թագավորը Ազատ գետի հովտում, հսկայական ամայի տարածության վրա, ստեղծել է արհեստական անտառ, որի չափերը այսօր էլ զարմանք ու հիացմունք են պատճառում մասնագետներին:

Տեղանքի բարդ ռելիեֆի պայմաններում, երբ չկային տնկարաններ և բարեկարգ ճանապարհներ, բացակայում էր անհրաժեշտ բանվորական ուժը, քանի որ Հայաստանը Պարսկաստանի դեմ երեսնամյա պատերազմ էր մղում, այդ գործի իրականացումը անհնարին էր թվում: Խոսրով 2-րդ թագավորը անտառատնկումը հայտարարեց «Խաշար հանել»: Ամեն մի քաղաքի, բնակավայրի, շենի առանձին առաջադրանք տրվեց, որով թագավորական հրովարտակի համաձայն, յուրաքանչյուր անձնավորություն պարտավոր էր որոշակի թվով ծառեր տնկել իրեն հատկացված տեղամասում: Մոբիլիզացվեցին ամբողջ տրանսպորտը, քաշող անասունները, նույնիսկ կորքը: Շրջակա անտառներից մատղաշ տնկիներ, մեծ մասամբ «վայրի կաղնի» (արևելյան կաղնի) էին հանում և սայլերով տեղափոխելով Խոսրովի անտառ, տնկում մեծ խնամքով: Նախօրոք կառուցվել էր հատուկ ջրանցք՝ տնկիները ոռոգելու համար: Տասը տարուց էլ պակաս ժամանակամիջոցում Գառնի բերդից մինչև Դվին և հին Արտաշատ ընկած հսկայական տարածքի վրա ստեղծվեց մի հրաշալի անտառ: Անտառի վերին մասում կառուցվեց մի շքեղ տաճար և անվանվեց «Տաճար մայրի» (անտառի տաճար): Անտառի ներքին մասը անվանվեց «Խոսրովակերտ»: Այստեղ էր գտնվում թագավորի ամառային արոտանիստը: Անտառում բաց թողեցին մեծ քանակությամբ վայրի կենդանիներ, որպեսզի թագավորը և հարուստ ավագանին զվարճանային որսով ու խրախճանքով:

Խոսրով 2-րդ թագավորի ստեղծած անտառը և նրա շրջակա գիհուտները, ընդամենը 24 հազար հեկտար ընդհանուր տարածությամբ, 1958 թվականին Հայկական ՍՍՀ կառավարության կողմից արգելոց հայտարարվեց:

Արգելոցը գտնվում է մեր հանրապետության կենտրոնական մասում, Գեղամա լեռնաշղթայի հարավային լանջերի ու լեռնաճյուղավորությունների վրա, որտեղ հողմահարված լանջերից առաջացել են բազմաթիվ ձորակներ, ժայռերի գեղեցիկ կուտակումներ, զարմանահրաշ բնական հուշարձաններ: Այն ընդգրկում է Գառնի և Վեդի գետերի ավազանները: Այստեղ են գտնվում մեր հանրապետության չորային շրջաններին բնորոշ նոսր անտառներն ու տափաստանները:

Արգելոցի տարածքում հատկապես գեղեցիկ են բազալտյա հզոր, վեցանիստ սյուները, որոնց բարձրությունը հասնում է մինչև 25 մետրի: Այստեղ հատկապես լավ են պահպանվել բուսականության մի շարք կուսական լանդշաֆտներ:

Անտառային զանգվածներում գերիշխող տեսակ է հանդիսանում արևելյան կաղնին: Հանդիպում են նաև թխկին, թեղին, տանձենին, խնձորենին, արոսենին, ուռենին և այլ տեսակներ: Խոսրովի անտառի տարածքում աճում են 1450 բուսական տեսակներ:

Այստեղ մեծ հետաքրքրություն են ներկայացնում նաև մեր լեռնաշխարհին յուրահատուկ գիհու նոսրուտները:

Հարուստ է նաև Խոսրովի արգելոցի կենդանական աշխարհը: Այստեղ հանդիպում են 117 տեսակի թռչուններ, որոնցից հատկապես արժեքավոր են մոխրագույն կաքավը, թխակապույտ աղավնին, սև անգղը, սպիտակագլուխ անգղը, արծիվը և այլն: Ձկներից հանդիպում են կարմրախայտը, տառեխիկը, անգորական լերկածուկը, կողակը, սողուններից՝ տափաստանային իժը, հայկական գյուրզան, ժայռային մողեսը, դեղնափորիկը և այլն: Կաթնասուններից հանդիպում են սովորական ոզնին, նապաստակը, անտառային քնամուկը, կզաքիսը, գորշ արջը, գայլը, աղվեսը, ընձառյուծը, լուսանը, վայրի խոզը, բեզոարյան այծը, հայկական մուֆլոնը՝ ընդամենը 30 տեսակ:

Դաժան ու ձյունառատ ձմռանը, երբ ձյունածածկոցի տակ է մնում խոտակեր կենդանիների հիմնական սնունդը՝ բուսականությունը, Հայաստանի որսորդական միության, անտառային տնտեսության պետական կոմիտեի և բնության պահպանության ընկերության հազարավոր անդամների ջանքերով անհրաժեշտ քանակությամբ խոտ, աղ և կանապան խտացրած կերեր են տեղափոխվում արգելավայրերը՝ կենդանիներին սովից փրկելու համար:




## ԾԽԵՐԸ ՈՐՊԵՍ ԽՈՐՏԻԿ

Արդեն վաղուց է, որ երկիրը տնքում է պահածոների տուփերի և դատարկ շշերի բեռան տակ: Դրանք թափում են օվկիանոսները, խորում հողի տակ: Գարշելի սարեր են թվում քաղաքամերձ աղբանոցները: Իսկ ի՞նչ սարսափելի տեսք են ստանում անտառներն ու լճափերը զբոսաշրջիկների այցելությունից հետո:



Ճապոնական «Նիսսեյ Մեյու» ֆիրման հասարակ ձևով լուծեց այդ խնդիրը: Այժմ, կաթը խմելուց հետո, զբոսաշրջիկը կարող է շատ հաճույքով ուտել նաև շիշը:

Շշերը և պահածոների տուփերը կարելի է պատրաստել ուտելու համար պիտանի և նույնիսկ համեղ սպիտակուցային թաղանթից:

Սկզբում մաքրած սխտորից ստանում են սպիտակուցային լուծույթը: Դրան ավելացնում ցանկացած համեմունքներ և տաքացնում մինչև 80 աստիճան: Եվ հենց այդ լուծույթից էլ պատրաստում են ուտելիք թաղանթը:

Եթե երբևէ տեսնեք պահածոյի տուփ ուտող մարդու, չվախենաք, այլ «բարի ախորժակ» ասացեք նրան:

## Ա՞Յ ՔԵԶ ՍՈՍԻՆՁ

Թերևս, մի երեսուն տարի սրանից առաջ քչերը կհավատային, որ կարելի է պողպատին պղինձ սոսնձել, իսկ պղնձին՝ ալյումին և այդ բոլորին փայտ և կամ որևէ այլ բան:

«Դա անհնարին է», — կասեր ինժեները մի երեսուն տարի առաջ:

Սակայն քիմիկոսները ստեղծեցին էպօքսիդային սոսինձը:

Սկզբում այդ սոսնձին չէին վստահում:

Դրա համար փորձարկողները դիրեկտորներին բակ հրավիրեցին և նրանց ներկայությամբ էպօքսիդային սոսնձով սոսնձեցին երկաթյա երկու սալիկներ: Որից հետո տակի սալիկը սոսնձեցին բակում կանգնած բեռնատար ավտոմեքենային, իսկ վերևինը՝ վերամբարձ կռունկին: Մի քանի րոպեից բեռնատարը ճոճվում էր օդում, և սալիկները այնքան ամուր էին կպել, որ չպոկվեցին:

Դրանից հետո գործարանները գրեթե յոլա չէին գնում առանց էպօքսիդային սոսնձի:

Բայց այդ սոսինձն ունի մի մեծ թերություն:

Բավական էր, պատրաստված սոսնձի մեջ ջուր կաթեր, որ սոսինձը չկարծրանար: Մետաղի սոսնձվող մակերեսը անհրաժեշտ էր լավ մաքրել, հակառակ դեպքում ամուր չէր սոսնձվում:

Ջրի տակ աշխատելու մասին երազել անգամ չէր կարելի:

Ուկրաինական ակադեմիայի բարձրմոլեկուլյար միացությունների քիմիայի ինստիտուտի գիտնականները ստեղծեցին մի նոր սոսինձ: Այն կոչվում է «Սպրուտ» (ութոտնուկ):

Նրանով կարելի է սոսնձել բետոններն ու մետաղները, ապակեպլաստը և այլ նյութեր:

Նա սոսնձում է ամուր և՛ ջրում, և՛ օդում: Իսկ սոսնձող հատկությունը ավելի ուժեղ է, քան էպօքսիդային սոսնձինը:

## «ԼՍՈՒՄ ԵՄ ՍՏՈՐԳԵՏՆՅԱ ՀՈՍԱՆՔՆԵՐԻ ԽՇՇՈՑԸ»

Ականջակալներով մարդն անցնում է մացառապատ դաշտի միջով: Նրա ձեռքին մետրաչափ, մետաղյա մի փողակ կա:

—Այդ ի՞նչ եք լսում,— հարցնում են մարդուն:

—Լսում եմ, թե ինչպես է մուկը խլրտում իր բնում, իսկ հիմա լսում եմ մկնիկի ծվծվոցը, նա ուտել է ուզում:

Մարդը շարունակում է ճանապարհը:

— Այստեղ խողովակն անցնում է երկու մետր խորությամբ: Հին խողովակ է, ժանգոտված: Այստեղից այն թեքվում է դեպի աջ:

Մարդը լսում է ամեն ինչ և տարբերում ստորգետնյա ամենաչնչին խշշոցն անգամ: Որովհետև այդ ականջակալ սարքը ձայներն ուժեղացնում է մոտ հարյուր հազար անգամ: Այն ստեղծել են Ռյազանի ռադիոտեխնիկական ինստիտուտի գիտնականները: Բայց անունը դեռ չեն որոշել:

Այդ սարքը անմիջապես մեծ հետաքրքրություն առաջացրեց: Նա ընդամենը չորս-հինգ կիլոգրամ քաշ ունի և յուրաքանչյուր գրագետ մարդ մի քանի րոպեում կսովորի, թե ինչպես օգտագործել: Եվ ամենուր, որտեղ այն օգտագործում են, մեծ օգուտ են ստանում:

Օրինակ՝ վնասվել է ստորգետնյա նավթատար մի հին խողովակ: Առաջ, մինչև գտնում էին վնասված տեղը, նավթի մեծ կորուստ էին ունենում: Իսկ հիմա բավական է, որ մարդը այդ սարքը ձեռքին գիծ դուրս գա, անմիջապես կհայտնաբերի բոլոր անսարքությունները:





Սարքը փորձարկողները հիշում են մի այսպիսի դեպք։

Ականջակալներով մարդն անցնում էր դաշտի միջով և ասում, թե ինչ է լսում։

—Այստեղ խողովակն ունի ծերպավոր բացվածք,— ասում էր նա, — իսկ այստեղ՝ կոր, իսկ ահա այստեղ՝ մի նեղ ճեղքվածք է, որտեղից ջուրը հավիվ է դուրս հոսում։ Իսկ ստորգետնյա ջրատար այս խողովակը կարգին է, լսում եմ, թե ինչպես են ջրի շիթերը շփվում խողովակի պատերին։ Բայց, սպասեք, այստեղից մեկ կիլոմետրի վրա գտնվող կայանում վնասվել է մղիչ պոմպը, ջուրն ընդհատումներով է հոսում։

Կայանի ինժեներները թեև թերահավատորեն լսեցին, բայց երբ ստուգեցին պոմպը, պարզվեց, իրոք, ժամանակն էր այն վերանորոգել։

## ՖԻԼՄ ՊԱՏՎԵՐՈՎ

Մեզ ծանոթ են երաժշտական ավտոմատները։ Իջեցնում ես մետաղադրամը և ընտրում քո ցանկացած մեղեդին, ավտոմատը ինքը կհանի ձայնապնակը, կմիացնի նվագարանը, նստի՛ր և լսի՛ր։

Այժմ ստեղծված է այդպիսի կինոավտոմատ։

Մի ընտանիք կայարան է եկել գնացքը մեկնելուց մեկ ժամ առաջ. բավական ժամանակ կա, ի՞նչ անել։

Մտնում ես մի ոչ մեծ սենյակ, որտեղ ընդամենը հինգից-յոթ աթոռ կա։ Թիկնակի մեջ ընտրում ես ցանկացած ֆիլմը, իջեցնում ես դրամը, սեղմում կոճակը։ Մնացածն անում է ավտոմատը։ Հանում է կամեթը և էկրանի վրա ցույց է տալիս նկարը։

Կինոյի ավտոմատը ստեղծել են շվեդացի մասնագետները։

### «ՈՒՇԱԴԻՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՄՐՑՈՒՅԹ-75»

#### ԱՌԱՋԻՆ ՓՈՒԼ

1. «Որքան ժամանակ համագործակցելը» չի նշանակում որոշ համաձայնել բավականին։

Ո՞ր նյութից է վերցված այս նախադասությունը։ Ի՞նչ որսի մասին է խոսքը։ Ի՞նչ գիտեք այդ կենդանու մասին։

2. «Նա անհանգիստ տակ տրորեց անհամբերությունները և ասաց. որ...» Ի՞նչպես է ավարտվում նախադասությունը։ Ո՞վ է պատմվածքի հեղինակը։ Համառոտ ասել, թե ինչի՞ մասին է պատմվածքը։

3. «Հիմնականումս ո՞րն է, գեղ խմելն ի՞նչ է... Հասկացա՞ր»։

Ո՞վ է այդպես ասում, ի՞նչ առիթով։ Պատմվածքի բուն իմաստը ո՞րն է։

4. «— Դու նրա միամտությունը ծաղրում ես,— ասաց Սեթը»։

Ո՞ւմ միամտության մասին է խոսքը։ Ծաղրողն ինքն ինչպիսի՞ն է։

Սիրելի ընթերցողներ, նորից հիշեցնում ենք, որ շատ միավորներ վաստակելու համար պետք է հարցերին պատասխանել լրիվ, և գրել խնամքով, գեղեցիկ, առանց սխալների։ Չմոռանաք նշել հասցեն, որ դպրոցում և դասարանում եք սովորում։

Լույս է տեսնում 1923 թվականից

№ 5 մայիս 1975 թ.



# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԽԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՁՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍԱՐԳՍՅԱՆ Լ. (պատասխանատու քարտուղար), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и республиканского совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—37—90

ՎՖ 05432։ Պատվեր 917։ Տպաքանակ՝ 81800։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 25/IV 1975 թ.։

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91։

ԳԻՆԸ 10 Կ. ԻՆԴԵՔՍ 77806



# ՄԱՆՈՒՇԱԿ

ԳՐԻԳՈՐ ՄԱՋՄԱՆՅԱՆ

Գարնան հովից
Օրորվում,
Կապույտ շորով
Շորորում,
Նայում է լուրթ
Երկնքին,
Ժպտում է լուռ
Ամենքին։
Շշնջում է
Հեզանազ.
— Փոքրի՛կ տղա,
Ձեռք չտաս...

Թերթիկներից
Ցողաթաց
Նայեց տղան
Ու ժպտաց.
— Ա՛խր, ինչպե՛ս
Քեզ մենակ
Թողնեմ, քնքո՛ւշ
Մանուշակ։
Ես քեզ ինձ հետ
Կտանեմ,
Բաժակի մեջ
Կպահեմ,
Որ քեզ տեսնեմ
Շարունակ,
Միշտ նկարեմ
Մանուշակ։



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ




## ԺԱՄԱՆՑ

Գծագրի ազատ շրջանակներում տեղադրե՛ք մեկից մինչև քսանմեկ թվերը (16-ը, 17-ը, 18-ը նշված են) այնպես, որ յուրաքանչյուր մեծ շրջանագծի վրա գտնվող վեց թվերի գումարը և եռանկյան յուրաքանչյուր կողմի չորս թվերի գումարը կազմի 60։

Կազմեց ՌԱՖԻԿ ՀԱԿՈԲՅԱՆԸ